1916 № 46.—Նոյեմբերի 13

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ

10 ԿՈՊԷԿ

10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 րուբլի, կէս տարուան 2 ր. 50 կ.։ Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ր., կէս տարուան 2 ր.։ Արտասահման՝ տարեկան 5 ր., կէս տարուան 3 ր.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արտաքրադեան հրապար. № 7. Ձեռախօս № 29.

Պոստի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։
Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։
Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։
Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ԴՊՐՈՑԱԿԱՆ ՄՏԱՀՈԳՈՒԹԻՒՆ

Պատերազմը կլանել է բոլորի ուշադրութիւնը. մարդկային մտածողութիւնն անգամ ստացել է որոշ ուղղութիւն, որ կապուած է պատերազմական գործողութիւնների և հետևանքների հետ։

Իսկ այն միւս բազմաթիւ ծանրակշիռ խնդիրները, որոնք կեանքի խաղաղ ժամանակ գերագոյն նշանակութիւն էին ունենում և հոգեկան ու մտաւոր ոյժեր լաբում, մոռացուած են կամ առանձին ուշադրութեան չեն արժանանում։

Սակայն չպէտք է մոռանալ, որ պատերազմը թէև ծանր, բայց ժամանակաւոր երևոյթ է. չպէտք է մոռանալ, որ ապագան պատկանելու է լուսաւոր և կուլտուրապէս զարգացած ժողովուրդներին։

Ահա թէ ինչու մտանկցելով պատերազմական գործերին ամենայն թափով, միաժամանակ հարկաւոր է առաջ մղել և ժողովուրդի կրթական և կուլտուրական կեանքը։

Այս տեսակէտից մեր հայ իրականութիւնը ցաւալի է։ Հայ ժողովուրդի լաւագոյն իղձն ու անխախտ փափագը, նրա կեանքի լուսափայլ երևոյթը՝ հայոց դպրոցը գտնւում է ծանր, տագնապալի վիճակի մէջ և ենթարկուած է փակման, կորստեան վտանգի, մանաւանդ գիւղերում։

Մի ժողովուրդ, որը ձգտում է պահպանել իր ազգային ինքնուրոյնութիւնը՝ լեզու, կրօն, գրականութիւն և այլն, որը ցանկանում է ապրել և զարգանալ, որը տոգորուած է ապագայի լաւագոյն յոյսերով, նա չի կարող և չպէտք է հրաժարուի իր դպրոցից։

Դպրոցը լուսաւորութեան և գիտութեան այն աղբիւրն է, որը մի անխուսափելի անհրաժեշտութիւն է թէ անհատի և թէ ամբողջ հասարակութեան զարգացման գործին։

Դպրոցի և հասարակութեան մէջ կայ մի օրգանական, անքակտելի կապ և փոխադարձ ներգործողութիւն։ Այդ կապի առթիւ յոյն փիլիսոփայ Արիստոտէլը շատ տեղին է նկատել, որ եթէ մարդիկ կարողանում են ապրել հասարակական կազմով, այդ կատարւում է շնորհիւ դպրոցի, որտեղ մարդիկ ստանալով կրթութիւն և զարգացում, հասկանում են միմեանց և ըմբռնում ընդհանուրի բարօրութիւնը։

Ժողովրդական դպրոցը ժողովրդի լուսաւորութեան և կուլտուրականութեան հիմնաքարն է. Նրա առաջադիմութեան և քաղաքակրթութեան առաջին հանգոյցն (էտապն) է։

Ահա թէ ինչու ժողովրդական դպրոցը մեծ և կարևոր խնդիր է համարւում ամեն մի երկրում, որը կանգնած է առաջադիմութեան ճանապարհի վրայ։

Եւրոպայում, Ամերիկայում ժողովրդական դպրոցի գործի վրայ ահագին գումարներ են ծախսւում և ոչ պակաս աշխատանք թափւում, որպէսզի մատաղ սերունդը կրթուի, լուսաւորուի և ապագայում հասարակութեան և ազգի համար օգտաւէտ անդամներ լինի։ Շատ երկրներում, ինչպէս են՝ Անգլիա, Ֆրանսիա, Աւստրիա, սկզբնական ուսումն պարտաւորիչ է բոլոր երեխաների համար, սկսած 5—6 տարեկան հասակից մինչև 12—14։ Անգլիայում և մի քանի ուրիշ երկրներում մինչև անգամ տուգանք է սահմանուած այն ծնողների համար, որոնք խուսափում են իրենց երեխաներին դպրոց ուղարկելուց։

Իսկ Գերմանիայում ժողովրդական դպրոցական գործը այն աստիճանի ծաղկած դրութեան մէջ է, որ մինչև անգամ այդ մասին սրամիտ դարձուածք կայ. «Գերմանիան նոյնքան հարուստ է իր ժողովրդական ուսուցիչներով, որքան Իտալիան և Սպանիան իրենց կուսակրօններով»։

Ռուսաստանում ժողովրդական դպրոցները նոյնպէս սկսել են բազմանալ, գլխաւորապէս ներքին համայնական (զէմստվօյական) նահանգներում։

Իսկ մեր հայերի մէջ թէև վերջին 40—50 տարուան ընթացքում քայլ առ քայլ բազմանում էին դպրոցները, մանաւանդ գիւղերում, բայց այս պատերազմի ժամանակ նրանց թիւը սկսեց crescendo նուազել։

Այս դպրոցական տարին այդ կողմից միանգամայն յուսահատական է։ Նոր բացուող դպրոցները շատ սակաւ են, իսկ հին դպրոցների թուի նուազումը շատ զգալի. այդ դպրոցների մի մասը փակուել է, միւս մասն էլ փակման վտանգի առաջն է կանգնած։

Արդ՝ ինչն է պատճառ այս ցաւալի երևոյթի։

Անհրաժեշտ է պարզել պատճառը, գտնել մեր դպրոցի գոյութեանը սպառնացող վտանգի արմատը, որպէսզի ժամանակին հարկաւոր միջոցներ ձեռք առնուեն առաջը առնելու և դպրոցը փորձանքից և կորուստից փրկելու։

Իրողութիւն է, որ մեր գիւղերում կան դպրոցական շինութիւններ—սեփական կամ վարձուած, կան դպրոցական կահ-կարասիք, կան աշակերտներ, բայց դպրոցների մի մասը այնուամենայնիւ մնում են փակ, իսկ բացման մասին ոչ մի յոյս։

Գաղտնիքն այն է, որ չկան գիւղ գնացող ուսուցիչներ և ուսուցչուհիներ։ Ասել թէ, ուսուցիչների մի մասը կանչուած են պատերազմ, հիմք չկայ, որովհետև մեր դպրոցների ուսուցիչները ազատ են զինուորակոչութիւնից։

Մեր ուսուցիչները և ուսուցչուհիները դժուարանում են առաջուայ ռոճիկներով՝ սովորական 400—500 ռուբլով գնալ գիւղական դպրոցներում ծառայելու, պատճառաբանելով կեանքի ներկայ թանգութիւնը։

Այդ պատճառաբանութիւնը իրաւացի է, բայց ոչ լիակատար։ Եթէ հրաժարուող ուսուցիչները ոգևորուած լինէին գաղափարական գործունէութեամբ, կը հաշտուէին ամեն դժուարութեան հետ, և չէին թողնիլ սիրած գործը, այլ կը մնային հաւատարիմ իրենց կոչմանը։ Այդ պահանջը թէև ունի բարոյական արժէք, բայց գործնական տեսակէտից չի կարող ունենալ ոչ մի հետևանք, որովհետև պահանջի կատարումը կապուած է զոհողութեան հետ, իսկ զոհողութիւնը կատարւում է ինքնաբերաբար ու ոչ թէ պահանջմամբ։

Մեր ուսուցիչների մի մասը գերադասեց թողնել դպրոցները և անցնել կառավարութեան քաղաքային և այլ հիմնարկութիւնները, ուր աշխատանքը աւելի լաւ է վարձատրւում. ուսուցիչներին հետևեց վարժուհիների մի մասը, անցնելով ծառայութեան հիւանդանոցներում, որբանոցներում։

Այս դէպքերը շատ խրատական են և պարզ ցոյց են տալիս, որ ժամանակ է լուրջ մտածելու մեր ուսուցիչների նիւթական դրութիւնը բարուոքելու մասին, ժամանակ է ապահովելու նրանց՝ հիւանդութեան, ծերութեան, իսկ մահուան դէպքերում և նրանց ընտանիքները։

Կանգնած լինելով դէմ առ դէմ այս աղաղակող պահանջի առաջ, լռելը, անհոգութիւնը մեր կողմից յանցանք կը լինի, եթէ չենք ուզում կորցնել մեր ժողովուրդի միակ ապաւէնը՝ դպրոցը։

Այս խնդիրը ըստ մեր կարծիքի համազգային խնդիր է. համահաւասար չափով պէտք է հետաքրքրութիւն շարժի և գրաւեցնի թէ Ռուսաստանի և թէ արտասահմանի հայութիւնը։

Անհրաժեշտ է այս խնդրի համար հրաւիրել համագումար Ամենայն Հայոց Կաթողիկոսի նախաձեռնութեամբ և այնտեղ քննել խնդիրը իր ամբողջութեամբ և որոշել, թէ ինչ միջոցներով կարելի է ապահովել մեր դպրոցները։

Մինչև որ մենք չը հիմնենք էջմիածնում մի խոշոր դպրոցական հաստատուն հիմնադրամ (ֆոնդ), մեր դպրոցները կորստեան վտանգից չեն կարող փրկուել։

Այդ հիմնադրամի (ֆոնդի) միջոցները պէտք է լինեն՝

ա) Միանուագ համազգային լայն ժողովարարութիւն.

բ) Համազգային մշտական դպրոցական տուրք.

գ) Ազգային-եկեղեցական կալուածքների արդիւնքի որոշ մասը։

Իսկ գումարների գործադրութիւնը պէտք է կատարել այն հայկական-կազմակերպութիւնների միջոցով, որոնք իրենց ծրագրով զբաղւում են ժողովրդական լուսաւորութեան գործերով։

Վտանգ է սպառնում մեր դպրոցներին. անհրաժեշտ է շուտափոյթ նախաձեռնութիւն։

Ս. Ց.

## ԼԵՀԱԿԱՆ ՀԱՐՑԸ

*Պետական Դումայի վերաբացումը զուգադիպուեց մի ուշագրաւ քաղաքական դէպքի հետ. Աւստրիան ու Գերմանիան պետական անկախութիւն տուին ռուսական Լեհաստանին։ Այս դէպքում եւս, ինչպէս և բոլոր դէպքերում, ներկայ եւրոպական պետութիւնների քաղաքականութիւնը ցոյց տուեց իր Յանուսային դէմքը։ Մինչ մի ձեռքով նա խեղդում է Բելգիային, միւսով իբր թէ ազատութիւն է տալիս և կենդանացնում իր ձեռքով յօշոտուած Լեհաստանին։ Միւս կողմից մինչեւ ուրոյն պետութեան իրաւունքներով վերակազմուելու իրաւունք է տրւում ռ ո ւ ս ա կ ա ն Լեհաստանին, նոյն Լեհաստանի միւս մասերը՝ գերմանական Պօզնանն ու Սիլեզիան և աւստրիական Կրակովը մնում են իրենց բռնակալութեան ճիրաններում։ Այսպէս են «լուծում» ազգային հարցերը «ազգային հարցերի» երդուեալ թշնամի պետութիւնները։ Երբ պէտք է, երբ քաղաքական և պատերազմական տեսակէտեր այդ պահանջում են՝ նրանք հենց իրենց ձեռքով ծուատած մարմիններից խորտիկներ են ստեղծում թշնամուն վախեցնելու համար։*

*Լեհ հասարակութիւնը իր պարլամենտական ներկայացուցչութեան—կոլոյի միջոցով մերժեց այդ թերի, անկատար ազատութիւնն ու անկախութիւնը, մերկացնելով անժամանակ յայտարարութեան շարժառիթները։ Այստ կոլօն յոյս է յայտնում, որ Ռուսաստանը և դաշնակից պետութիւնները կարդարացնեն լեհ ժողովուրդի դարաւոր ակնկալութիւնները և գերմանական ակտին կը պատասխանեն, «թէ Լեհական հարցը կը լուծուի իր ամբողջ ծաւալով, որ Լեհաստանի միութիւնը կիրականանայ և Լեհաստանը կ՚ստանայ անկախ պետական կեանք»։*

*Լեհ ժողովուրդը իր արդար ցասումն ու իրաւունքներն է յայտարարում, բայց դժբախտաբար նրա «հարցն» եւ խճճուած է միջազգային քաղաքականութեան բարդ ցանցի մէջ։ Նրան ձայնակցում է և ռուս առաջադիմական մամուլը և մեղադրում մասնաւորապէս ռուս կառավարութեան, որ սա՝ ամեն բանում «ուշանալով»՝ ուշացաւ և այս խնդրում։ Լեհաստանի բախտը կապուած է մեծապէս Ռուսաստանի հետ. իսկ վերջինս ահա երրորդ անգամն է՝ հենց այս պատերազմի ընթացքում, որ դատարկ, անորոշ «յայտարարութիւններից» ու խոստումներից այն կողմը չէ անցնում։ Նա խոստանում է Լեհաստանին—պատերազմից յետոյ—այն ազգային ինքնավարութիւն, առանց սակայն որոշելու խընդրի իրաւական-քաղաքական բովանդակութիւնը։ Ոչ ոք չգիտէ, թէ ինչ են նշանակում վերջին յայտարարութեան «իր ազգային կուլտուրական և տնտեսական կեանքը ազատ տնօրինելու» խօսքերը և թէ, որ գլխաւորն է, ինչ երաշխիքներ կան իրականացման համար։*

*Այս պատերազմը մի շարք այլ հարցերի հետ աւելի ու քիչ թափով հրապարակ նետեց ա զ գ ա յ ի ն հ ա ր ց ը և երևան հանեց դրա ցաւոտ կողմերը։ Ներկայ պետութիւնների կեանքում անիրաւութեան ու անարդարութեան ամենապերճախօս վաւերագրեր են «ազգային հարցերը»։ Եւ դաշնակից պետութիւնները, որ սկզբից մինչեւ այսօր հոլովում են անվերջ, թէ իրենք կռւում են առհասարակ յանուն արդարութեան, իրաւունքի և քաղաքակրթութեան և մասնաւորապէս յանուն ճնշուած և հալածուած մանր ազգերի ազատութեան՝ մեծ պարտականութիւն և պատասխանատուութիւն են յանձն առել այս տեսակէտից։*

*«Լեհական հարցը» մէկն է այդ ինքնակամ ստանձնած պարտականութիւններից։ Կը կատարե՞ն նրանք իրենց վրայ առած այդ մեծ պարտականութիւնը՝ այդ ցոյց կը տայ պատերազմի վախճանը։ Այսպիսով աւելի կը լուսաբանուի պատմական կնճռոտ խնդիրներից մէկը, այն է՝ թէ ինչ կապ կայ ներկայ պետութիւնների միջազգային քաղաքականութեան և պատերազմի և արդարութեան իրաւունքի մէջ։*

*Վ. Խ—նի*

# Համաշխարհային պատերազմը

*Ռ ո ւ ս ա կ ա ն  ճ ա կ ա տ.—Այս շաբաթուայ ընթացքում պատերազմական կարեւոր փոփոխութիւններ չեն եղել։ Թշնամու յաճախակի եղած յարձակումները յետ են մղուած ռուսական զօրքերի կողմից։ Իլլուկստու շրջանում ռուսները գազային աջող յարձակում են գործել հակառակորդի խրամատների վրայ։*

*Ռ ո ւ մ ա ն ա կ ա ն  ճ ա կ ա տ.—Ժիու գետահովտում հակառակորդի զօրաւոր ճնշման տակ Ռումանները շարունակում են նահանջել դէպի Կրայիօ։ Դոբրուջայի ճակատում առաջապահ զօրքերի հետախուզութիւններ և հրաձգութիւն է տեղի ունենում։*

*Կ ո վ կ ա ս ե ա ն  ճ ա կ ա տ.—Ողնուտից հարաւ-արեւելք թիւրքերը բաւական մեծ ուժերով յարձակուել են ռուսների վրայ։ Կռիւը շարունակւում է կատաղի կերպով։ Սուլթանաբադի վրայ թիւրք զօրքերի յարձակումը յետ է մղուել, նրանց համար մեծ կորուստներով։ Այդ ճակատում ռուսները շարունակում են հետապնդել թշնամուն։*

*Բ ա լ ք ա ն ե ա ն  ճ ա կ ա տ.—Դաշնակից զօրամասերը գրաւելով Մոնաստիր քաղաքը առաջանում են յաղթական։ Մոնաստիրից հիւսիս գերմանաբուլգար զօրքերը կատաղի կերպով դիմադրում են դաշնակից զօրքերին։ Սուխոդոլից հիւսիս սերբերը փախուստի են մատնել թշնամուն և գրաւել մեծ աւար և հակառակորդի խոշոր մթերանոցը։ Ֆրանսացիները Մակովի ուղղութեան վրայ առել են 500 գերի և Լեվեիցը գրաւելով առաջանում են անդադար դէպի հիւսիս։*

*Ֆ ր ա ն ս - Ա ն գ լ ի ա կ ա ն  ճ ա կ ա տ.—Այս շաբաթուայ ընթացքում կատաղի յարձակումների դիմեցին Անգլիական զօրքերը Սոմմի շրջանում. Ֆրանսացիները Վօ բերդից կամաց կամաց ընդարձակում են իրենց խրամատները։ Մինչեւ այժմ նրանք բռնել են 5,345 գերի և ձեռք ձգել մեծաքանակ ռազմամթերք։*

—

*Հեռագիրը հաղորդեց, որ Աւստրիոյ կայսր Ֆրանց-Յովսէփը վախճանուել է։ Նա ծնուել է 1830-ին և գահ բարձրացել 1848-ին։ Նրան յաջորդել է արհիդուքս Կարլ-Ֆրանց-Յովսէփը։*

# Պետական կեանք

## ԶՕՐՔԵՐԻ ՀՐԱՄԱՆԱՏԱՐԻ ԿԱՐԳԱԴՐՈՒԹԻՒՆԸ

*Ըստ հրամանի զօրքերի հրամանատարի հաղորդում եմ, որ արգելւում է հրապարակել յօդուածներ և դիտողութիւններ Տաճկահայաստանի ապագայ կազմակերպութեան մասին։*

(Газета-Копейка № 95) *Նախագահ զօրավար Դոբրովոլսկի*

———

### ՊԵՏԱԿԱՆ ԴՈՒՄԱ

*Պետական Դումայի առաջին նիստը փակուեց՝ խոստանալով գոնէ երկրի քաղաքական ու տնտեսական կեանքի մասին ասելու ամբողջ ճշմարտութիւնը։ Սակայն Մոսկուայի համար հրատարակած գրաքննական բացառիկ կանոնները Դումայի բացման նախօրեակին խլացրին և այդ ձայնը։ Մայրաքաղաքների կադետական թերթերն անգամ «սպիտակ» սիւնեակներով լոյս տեսան։*

արդէն գրաբարը արուեստական լեզու էր և կեանքի զարգացումից կտրուած, որի բարձրութիւնը պահպանում էին միայն յատուկ սիրահարները և վանական դպրոցները, իսկ Զամչեանի, Բագրատունու և Հիւրմիւզի ճիգերը աւելի ևս ընդգծում են այդ հանգամանքը։

Մեր միջնակարգ դպրոցներում լեզուի և գրականութեան ուսուցումը պիտի գլխաւորապէս հիմնուի աշխարհիկ գրականութեան վրայ։ Ի հարկէ Գողթան երգերը և հին առասպելները իրենց այն լեզուով, որով պահպանուել են մատենագիրների մէջ, կարող են ընթերցանութեան նիւթ ծառայել գրաբարի դասերի ժամանակ, բայց դրանց բանահիւսական և գրական ուսումնասիրութիւնը պիտի վերապահի աշխարհիկ գրականութեան դասերին և դասատուին։ Իսկ բուն գրաբար գրականութեան գլխաւորագոյն գործերն ու երևոյթները, որքան մատչելի կը լինին պատանիներին, պիտի աւանդուին Զ. և Է. դասարաններում, գուցէ 4, ամենաշատը 5 ժամում, անշուշտ ցածր դասարաններում գրաբարի բաւական ծանօթութիւն տալուց յետոյ։ Աւելին ձանձրալի կը լինի և ժամավաճառութիւն։

Մարտ. Յարութիւնեան

9 հոկտ. 1916 (Վ և ր ջ)

Երևան

## † ՀԵՆՐԻԿՈՍ ՍԵՆԿԵՒԻՉ

Հեռագիրը հաղորդեց, որ Շվէյցարիայում վախճանուել է Լեհ ազգի յայտնի գրող Հենրիկ Սենկևիչը։

Ներկայ համաշխարհային պատերազմում Լեհ ժողովուրդը միւս փոքր ազգերի նման ոտնատակ եղաւ կռուող պետութեանց կրունկների ներքև։ Այս փոքր բայց քաղաքակիրթ ժողովուրդը գերմանական և սլաւոնական մեծ մշակոյթների միջև սեղմուած լինելով հանդերձ, դարեր շարունակ կարողացել է դիմադրել ազգային հզօր և ամրակուռ մի դիմացկունութեամբ և պահպանել է իր գոյութեան հիմունքները, ինչպէս հայ ժողովուրդը Ասիոյ այս խուլ և բարբարոս միջավայրում։

Լեհ ժողովուրդը ոչ միայն կարողացել է իր ֆիզիքական գոյութիւնը պահպանել, այլ և աշխարհին տուել է այնպիսի հարուստ և պատկառելի գրականութիւն, որ պատիւ է բերում նրան. նա կառչել է իր երկրին ու հողին և այն դարձրել հարուստ և գեղեցիկ, շնչաւորել իր մտքի և արուեստի արգասիքների զօրաւոր մթնոլորտով։

Լեհ մտքի այդ ամենամեծ դարբնողներից մէկն եղել է Հենրիկ Սենկևիչը, որը հարստացնելով մէկտեղ իր մայրենի գրականութիւնը, նրա հմայքն ու արժանիքը շեշտել է համաշխարհային գրականութեան անդաստանում և ժողովուրդների ուշադրութիւնն ու համակրանքը գրաւել դէպի իր տառապող ազգը։

Այդպիսով նա երկու ծառայութիւն է մատուցել, մէկը համաշխարհային գրականութեան, միւսը իր տանջուած ու հեծեծող հայրենիքին։

Հենրիկ Սենկևիչը ծնուել է 1846 թուին, Վոլ-Օժեսկոյ աւանում։ Իր կրթութիւնն ստացել է Վարշաւայում։ 1876 թուից սկսեալ նա մուտք է գործում գրական ասպարէզը, ուղևորական նկարագրութիւններով. յետոյ մէկը միւսի ետևից սկսում է հրատարակել իր տաղանդի լաւագոյն ստեղծագործութիւնները, որոնց մէջ հեղինակը երևան է բերում նկարագրական ուժեղ թափ, պատկերաւորութիւն և մի խորունկ և քնքոյշ նրբութիւն, որ թափանցում է ընթերցողի հոգին և համակում նրան բանաստեղծական յոյզերով և զգացումներով։

Կամաց-կամաց Սենկևիչի տաղանդը սկսում է ծաւալուել և լայնարձակ հորիզոններ ընդգրկել. հայրենի գիւղից, նրա հոգին ձգտում և երկարում է դէպի քաղաքը և քաղաքից աւելի ընդարձակուելով պարփակում է ժամանակակից մարդկութիւնը և նրա մտածումներն ու ձգտումները։

Սենկևիչը իր «Առանց Դաւանանքի» վէպով և նրա հերոս Լէօն Պլոշովսկու նկարագրով երևան է բերում մեր ժամանակների մարդկութիւնը, իր ամենակիրթ և ամենազարգացած ներկայացուցիչների մէջ խտացած. այն սկեպտիկ հոգեբանութիւնը զգացումների և մտքերի յարափոփոխ, ալեծուփ բնաւորութիւնը, ամրակուռ ու հաստատուն սկզբունքներից զուրկ, արուեստի և բանաստեղծական ամենանուրբ երազների մէջ օրօրուող արդի ազնուական մարդը կարողացել է յաջող և հանճարեղ կերպով ներկայանալ այդ նշանաւոր վէպի մէջ։ Այդտեղ գործել է հեղինակի վրձինը, երևան հանելու համար տառապող մարդու ներքին աշխարհը և այս տիեզերական ցնորքների տատանուող և անկայուն ընթացքը։

Սենկևիչի հանճարը միայն չի պարփակուել ներկայ ժամանակների խորհուրդներով, այլ սլացել է դէպի յետ, հռովմէական հին, կախարդիչ աշխարհը և պատկերացրել այն բնական ու իրական կողմերով։ Այսպէս, իր «Յո՞ Երթաս» հռչակաւոր պատմական վէպի մէջ, հեղինակը նկարագրել է Հռոմէական աշխարհը Ներոնի ժամանակ, երբ քրիստոնէութիւնը սկսել էր մուտք գործել և տարածուել Հռոմէական ժողովրդի մէջ, ուր տիրապետում էր հեթանոսական կեանքը և բարբարոսութիւնը։

Այդ պատմավէպը, իր դէպքերի և տիպերի ճիշտ և հարազատ պատկերացումների հետ, ունի նաև գեղարուեստական շատ մեծ արժանիք, ոճի ու լեզուի գունագեղ յատկութիւն և այդ գեղարուեստական արժանիքը շեշտւում է այն ժամանակ, երբ մենք կարդում ենք գրուածքը և սարսուռ զգում։

Սենկևիչը ոչ միայն որպէս գեղարուեստագէտ մեծ ծառայութիւն է մատուցել մարդկութեան և իր ժողովրդին, այլ և եղել է զգայուն հայրենասէր և տանջուել նրա ներկայ ողբալի վիճակով և մթամած ճակատագրով։ Եւ այսօր երբ Լեհական հարցը դարձել է աշխարհի հետաքրքրութեան առարկայ և ամեն կողմից աշխատում են սիրաշահել նրա համակրութիւնը, պատմական այդպիսի կարևոր վարկեանին կնքեց իր մահկանացուն նրա ամենամեծ զաւակը, 76—ամեայ ալեզարդ ծերունին։

Յարգանք մեծ արուեստագէտին և նրա մայր՝ Լեհ ժողովրդին։

Հայորդի

## ՆԵՐԿԱՅ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՃԳՆԱԺԱՄԸ

### ՍԱԿԱԳԻՆ

Եթէ փորձենք փնտռել բոլոր այն պատճառները, որոնց հետևանքով ստեղծուած է ներկայ տնտեսական ճգնաժամը, այդ պատճառները մենք կը գտնենք հետևեալ կէտերու մէջ.

1. Աշխատող ձեռքերու նուազումը.
2. Սպառողներու թուի բարձրացումը (բանակ և փախստականներ).
3. Ներածութեան ու արտահանութեան դժուարութիւնը՝ երբեմնի բարեկամ, այժմ թշնամի պետութիւններու հետ.
4. Հաղորդակցութեանց դժուարութիւնը.
5. Սակադրէքի (taxation) դրութիւնը։

Չենք ցանկար ներկայ յօդուածով կանգ առնել այս բոլոր պատճառներու վրայ, քանի որ, մեր կարծիքով, այդ պատճառները մասամբ հասկանալի են նրանց համար, որոնք ըմբռնում են ներկայ պատերազմի արհաւիրներն ու յառաջացրած դրութիւնը, որը ընդհանուր է թէ պատերազմիկ և թէ չէզոք երկիրներու

համար։ Կը ցանկայինք, սակայն, վերլուծել սակագրէքի էութիւնը, որը, մեր կարծիքով, ամենագլխաւոր պատճառն է ներկայ արհեստական տնտեսական ճգնաժամին, որու մասին շատ քիչ, նոյնիսկ բնաւ խօսուած է։

*

Ի՞նչ կը նշանակի սակագրէք։ Բացառիկ պայմաններու մէջ, ինչպիսին է ներկայ պատերազմը, երբ կենսամթերքը չի բաւականանում եղած պահանջին, կառավարութիւնը որոշում է իւրաքանչիւր ապրանքի համար գին, որու համաձայն ծախուելու է ապրանքը. կառավարութեան որոշած այդ գինը սակագին կը կոչուի։ Այստեղից հետեւում է անմիջապէս, որ կառավարութիւնը որոշելով ապրանքներուն արժէքը, ինքը պարտաւոր է հսկել գործադրութեանը։

Արդ, այժմ առաջանում է մի նոր հարց. կառավարութեան որոշած սակագինը նպաստո՞ւմ է ապրանքներու ազատ ու արժան շրջանառութեանը, թէ, ընդհակառակը, պատճառ է դառնում ապրանքների արժէքի բարձրացումին ու արհեստական չգոյութեանը։

Մեր խորին համոզումով սակագնի դրութիւնը նպաստում է տնտեսական ժգնաժամի ծաւալման։

Սակագնի գործադրութեան վերլուծումը մեզի ցոյց պիտի տայ, որ երկրի ընդհանուր տնտեսական դրութիւնը վտանգւում է։ Շատ պարագաներում չէ կարելի որոշած սակագինը գործադրել։ Գործնականին մէջ դժուար է ստիպել ապրանքատէրերուն, որ իրենց ապրանքները վնասով ծախեն։ Նախ շատ դժուար է ճշգրտօրէն որոշել իւրաքանչիւր ապրանքի իսկական արժէքը, հետեւաբար նոյնիսկ առաւելագոյն չափով որոշուած գները պիտի մնան անիրագործելի։ Այստեղից հետեւում է, որ որոշուած գնի կողքին, անխուսափելիօրէն, գոյութիւն պիտի ունենայ «ներքնախանութային» գինն էլ, կամ թէ չէ վատ տեսակի ապրանքները պիտի ծախուին իբր լաւ ապրանքներ։ Շատ ճիշդ է, որ կառավարութիւնը պիտի հսկէ իւր որոշումներու գործադրութեան վրայ, բայց այդպիսով միայն իւր պարտականութիւնը պիտի ծանրաբեռնէ։

Բնականօրէն վաճառողները պիտի ջանան շուռ տալ դրուած կանոնը, որով կառավարութիւնը պիտի ստիպուի երկարացնել սակագրուած ապրանքներու ցուցակը։ Այսպէս, օրինակ, կաթը սակագրուած լինելով, անհրաժեշտ է սակագին որոշել կարագի ու պանիրի համար էլ, որովհետեւ, հակառակ պարագային, կաթնավաճառները պիտի ջանան իրենց կաթը պանրի կամ կարագի վերածել աւելի նպաստաւոր գնով ծախելու համար։ Նոյնը նաեւ ցորենի եւ ալիւրի համար։ Երբ կառավարութիւնը ստիպում է ցորենի կամ ալիւրի վաճառականներուն որոշուած գնով ծախել իրեց ապրանքը, ինչ երաշխիք ունենք հաւատալու, թէ նրանք չպիտի աշխատեն աւելի շատ թեփ պատրաստել, իրենց ուզած արժէքով ծախելու, եթէ կառավարութիւնը սակագին չէ որոշած թեփի համար։ Ցորենի համար սակագին որոշած պարագային՝ մի առանձին սակագին եւս անհրաժեշտ է որոշել գարու, հաճարի կամ վարսակի, նոյնիսկ կորեկի համար, քանի որ, նեղ օրերուն, այդ կարգի հացահատիկները կարող են ցորենը փոխարինել անօթի ժողովուրդի, մանաւորապէս գիւղացութեան համար։

Սակագնի դրութիւնն ընդունելով, անհրաժեշտ է նոյնպէս որոշել իւրաքանչիւր ուտելիքի արժէքը, ինչպէս նաեւ այդ ուտելիքը պատրաստող ու արդիւնաբերող ամեն մէկ նիւթ, առարկան։ Կարելի՞ է արդեօք պարտիզպանի կամ հողատէրի արտադրած նիւթերը անտես առնել, երբ սրանք թանգ են գնում իրենց աշխատութեան համար անհրաժեշտ եղած գործիքները, երբ աւելի են վճարում աշխատաւորներուն, սայլապաններուն եւ այլն փոխադրութեան միջոցներուն։ Օրավարձքի եւ ամեն տեսակի աշխատանքի համար սակագին որոշելու պարագան անմիջական հետեւանքը կը լինի անհրաժեշտ նիւթերու սակագնին։

Բայց մի՞թէ այսքանով բաւականանալու է։ Ո՛չ ապաքէն մեզ համար նոյնքան անհրաժեշտ են վառելիքի, լուսավառութեան, հագնելիքի ու խմելիքի նիւթերը։ Կուզէ՞ք աւելացնել նաեւ հողի պարարտութեան համար անհրաժեշտ եղած աղբը։ Այս ընթացքով պէտք է յառաջանալ մինչեւ վերջին կէտը։

Ամենէն կարեւոր հարցը—որու վրայ աւելի պէտք է ծանրանալ—այդ այն է, որ սակագնի դրութիւնը տակաւ հազուագիւտ կարձնէ անհրաժեշտ եղած նիւթերը։ Սակագինը արգելք է օտար ապրանքներու ներմուծութեանը, ինչ որ կարող է բոլորովին դադրել, մինչդեռ, ներկայ պայմաններում, Ռուսաստանը անհագին պէտք ունի օտար ապրանքներու։ Գալով ներքին արդիւնաբերութեան, սակագինը մեծ ու մահացու հարուած կը տայ նորան։ Ներքին մշակութիւնն է, որ Ռուսաստանին կը հայթայթէ պէտք եղած հացի մեծ մասը, բայց հողի մշակութիւնը, այսօր, մեծ ճգնաժամի մէջ է հողագործներու եւ աշխատող ձեռքերու պակասութեան հետեւանքով։ Հողի ընդարձակ տարածութիւններ մնում են անմշակ, իսկ շատ հողագործներ, չկրնալով իրենց ծախքերը հաւասարակշռել որոշած սակագնով, չեն համաձայնում իրենց ունեցած հացահատիկը դրուած գնով վաճառել։ Արտաքին երեւոյթներու ետեւ չգնանք. սակագնի դրութիւնը յառաջացնելու է վտանգաւոր ճգնաժամ ներքին արդիւնաբերութեան, որը առանձնապէս վնասակար պիտի լինի երկրագործութեան համար, երբ մշակուած հողերու տարածութիւնը պիտի նուազի, արդիւնքը պիտի պակսի, երբ, ընդհակառակը, պիտի ստիպուենք արտաքին շուկաներու դիմել, եթէ երբէք դիւրութիւն ունենանք, իսկ հակառակ պարագային, ներկայ ընթացքով, սովը անխուսափելի կը դառնայ։

Ա. Մաքսապետեան

(Շարունակութիւնը հետեւալով)

---

## ԿՈՎԿԱՍԻ ՆԱԽՈՐԴ ՓՈԽԱՐՔԱՅ ԿՈՄՍ ՎԱՐԱՆՑՈՎ-ԴԱՇԿՈՎԻ ՅՈՒՇԱԳՐԻՑ*)

### Վրացիները

Գալով վրացիներին՝ իսկապէս անջատման ձգտելու նրանք սակաւ են մեղադրւում, որ նոյնչափ անհիմն է, որչափ եւ հայերին մեղադրելը։ Ճիշտ է, Անդրկովկասում ապրող ռուսների ազգայնական շարժման ազդեցութեամբ, որոնք յաճախ մամուլի մէջ եւ հասարակական ժողովներում պահանջեր են անում վրացիներից՝ վերջիններիս ազգային զգացումը վիրաւորւում է. այդ հանգամանքի հետեւանքով Քարթվէլիայի ցեղերի մէջ նկատւում են ազգայնական շարժման ինչ-որ նշաններ։ Սակայն Պետութեան համար ոչ մի լուրջ վտանգ չի կարելի սպասել այդ շարժումից։

Եթէ հարցը ի մօտոյ քննենք՝ կը տեսնենք, որ բոլոր ցանկութիւնները վրացի ազգայնականների, որոնց փայլուն ներկայացուցիչները ըստ քանակի չնչին խումբ ինքնավարներ ու ֆեդերալիստներ են, եւ որոնք մինչեւ օրս դեռ չեն պարզել դատարկ տերմինների նիւթական բովանդակութեան յորջորջումները, հետեւալն է՝ որ ճանաչուի քարթվէլացիների ինքնուրոյնութիւնը մեր պետական տեղական հիմնարկութիւնների ընդհանուր կազմին համահաւասար, ինչպէս, օրինակ, ուսումնարաններում դասաւանդման լեզուն։ Ամենահրատապ հարցը վրացի ազգայնականների համար՝ այդ ինքնավար վրաց եկեղեցական վարչութիւն ունենալն է, որ երբեմն Անդրկովկասի ռուս հոգեւորականութեան եւ նրանց միջեւ գործնականում ընդհարումներ է առաջ բերում։ Սակայն այդ հարցն էլ դառնում է զուտ տեսական հարց, որը

*) Տես «Համբաւաբեր» № 45։

ապագայում կենթարկուի կանոնական որոշման, որովհետև նրանից բղխող գործնական բարդութիւնները միշտ վճռւում են և երբէք վրաց հոգևորականութեան ազգային զգացումները չեն վիրաւորում։

Դժբաղդաբար վրացիների մէջ յաջողութիւն ունի ընկերվարական պրոպագանդ, և այդ շնորհիւ գիւղական համայնքներում ցարդ անաղարդ մնացած անտեսական խճճուած յարաբերութիւնների, որը գոյութիւն ունի կալուածատէրերի և գիւղացի դասակարգի միջև։ Սակայն պէտք է յուսալ, որ երբ ի կատար ածուին ստորև յիշուած իմ առաջադրութիւնները, իրենց հետևանքով կը տան այն պարարտ հողը, որի վրայ ընկերվարականների վարդապետութիւնը ոչ մի սնունդ չի ունենալ։ Նախ՝ 1912 թուի դեկտեմբերի 20-ի օրէնքը, որով նախկին ճորտ գիւղացիների հողաբաժինները (նադէլ) յետ են գնւում իբրև սեփականութիւն և այդպիսով կրճատւում են այդ նադէլների համար տրուող հարկերը. երկրորդ՝ արդէն Պետական Դումա իմ մտցրած օրինագիծը՝ տիրապետութեան իրաւունքով հողային հարցը կարգաւորելու այն գիւղացիների համար, որոնք ապրում են պետական հողերում. երրորդ՝ օրէնսդրական հիմնարկութիւնները մտցնելու համար՝ Նախարարների Խորհրդի կողմից արդէն հաւանութիւն գտած իմ օրինագիծը, որով խիզանները իրաւունք ունին կալուածատէրերից յետ գնելու իրենց հողերը։ Հաւասար չափով նոյն նպատակին կը հասցնեն իմ ձեռնարկած բոլոր միջոցները՝ վրաց գիւղերում գիւղատնտեսական օգնութիւն կազմակերպելու, միաժամանակ ռուսական սեփականութեան իրաւական սկզբունքները մտցնելով։ Այդ միջոցները չեն կարող չանդրադառնալ բնակչութեան բարեկեցութեան և նրա գիտակցութեան զարգացման, թէ ապահով և բարեկեցիկ ապրելու միակ իսկական միջոցը՝ այդ նրա յամառ աշխատանքը պիտի լինի իրա սեփական հ ո ղ ա բ ա ժ ն ո ւ մ, միացած գիտութեան և հմտութեան հետ։

## Մահմեդականները

Գալով Կովկասի մահմեդական բնակչութեան՝ ես չեմ կարող չնկատել, որ եթէ ապագայում մենք պէտք է վախ ունենանք Կովկասի առանձին ազգութիւնների անջատողական ձգտումից—թէև այդ վախը պատուաբեր չէ Ռուսաստանին—այդ թերևս մահմեդական բնակչութեան կողմից կարող է լինել, ըստ որում նրանք թուով գերակշռում են միւս ազգութիւններից և կրօնական մոլեռանդութեան բռնկումներ կարող են ծագել, բացի այդ Կովկասին հարևան են մահմեդական Պետութիւններ։ Իրաւ որ, տեսականօրէն դատելով, կարելի է ենթադրել Կովկասի զրաւումը, բայց, ի հարկէ, միմիայն մահմեդականների կողմից, որոնք ռուսական զէնքի ոյժի բացակայութեան դէպքում՝ իրենց շատութեամբ կարող են կլանել տեղական քրիստոնեայ ազգութիւններին։ Թէ հայերը և թէ վրացիները շատ լաւ և իրականօրէն գիտակցում են, որ առանց Ռուսաստանի նրանք կուլ կը գնան մահմեդականներին։ Որ այդ այդպէս է—ցոյց է տալիս ոչ միայն երկրի պատմութիւնը մինչև ռուսների այստեղ գալը, այլ և վերջին խառնակ շրջանի դէպքերը, այսինքն՝ հայ-թրքական ընդհարումները։

Մեր բաղդից մահմեդական ամբոխի մէջ տակաւին ոչ մի անջատողական սկզբունք ծագել չի կարող, ուստի և համիսլամութիւն և համթիւրքութիւն քարոզելու մասնակի փորձերը Կովկասում ոչ մի յաջողութիւն չեն ունենում։ Իբրև ապացոյց կարելի է առաջ բերել այն, որ Կովկասի մահմեդականները կատարեալ անտարբերութեամբ վերաբերուեցին Բալկանեան թերակղզում տեղի ունեցած վերջին դէպքերին։ Սակայն պէտք է միշտ ի նկատի ունենալ, որ մահմեդականների աւելի կուլտուրական խաւերում սկսում է զարգանալ ազգայնութեան ինքնագիտակցութեան գաղափարը։ Այս երևոյթը չի կարելի հաշուի չառնել։ Չի կարելի առանց հսկողութեան թողնել մահմեդականների տնտեսական կեանքը և անգիտանալ նրանց պահանջները։ Ճանաչելով մահմեդական առանձին ցեղերի ինքնուրոյնութիւնը և իրենց կրօնը դաւանելու ազատ իրաւունքը, անհրաժեշտ է ազդել նրանց վրայ՝ ռուսական կուլտուրան տարածելով նրանց մէջ և մտցնելով ռուսական օրէնքի հիմունքների գիտակցութիւնը։ Իսկապէս թուրք կրթուած հասարակութեան այժմեան դժգոհութիւնը ռուս իշխանութիւններից այն է, որ մահմեդական ազգաբնակութեանը աւելի քիչ ուշադրութիւն էր դարձւում՝ Պետութեան միւս ազգութիւնների համեմատութեամբ։ Չի կարելի չ'ընդունել, որ այդ տրտունջները որոշ չափով հիմնաւոր են։ Մենք շատ քիչ ենք մտածել մահմեդականների լուսաւորութեան մասին, որոնց մէջ ռուս դպրոցները մատներով կարելի է համարել։ Մինչև անկասկած է, որ կանոնաւոր դրուած ռուսական ժողովրդական դպրոցը՝ մայրենի լեզուի սկզբնական գրագիտութեան ուսուցմամբ, ամենաառաջին միջոցն է ռուսական աշխարհահայեացքով մահմեդականների վրայ ազդելու։ Այդ տեսակ դպրոցը կազատի նրանց պետութեան տեսակէտից վնասակար համիսլամութեան և համթիւրքութեան պրոպագանդից այնպիսի դպրոցներում, ուր դասաւանդում են թուրք ուսուցիչներ թուրք դասագրքերով, որոնք չեն թափանցուած ռուսական գաղափարներով. այստեղ դասաւանդութիւնը լինում է օտար լեզուով, ինչպէս օրինակ՝ արաբերէն և Անատոլիականի թիւրքերէնով (որը անհասկանալի է բոլոր լեռնաբնակների համար) բոլոր այն միսիւնարական մասնաւոր դպրոցներում, ուր ազգաբնակութիւնը ուղարկում է իր երեխաներին՝ բաւականաչափ ռուսական դպրոցներ չը լինելու պատճառով

Տ

(Կը շարունակուի)

## ԳԱՒԱՌ

ԱԽԱԼՔԱԼԱԿ (Գորու վիճ.).—Ախալքալակի հանգուցեալ Յովհաննէս աւագ քահ. Տէր-Գալստեանը ինչպէս յայտնի է, իր բոլոր տեղումս գտնուած անշարժ կալուածները՝ երկու մեծ տուն և մի ընդարձակ այգի, նուիրել է Կ. Հ. Բ. Ընկերութեանը։ Կիրակի, հոկտեմբերի 30-ին, հանգուցեալի տարելիցի օրը, նրա գերեզմանի վրայ, որը գտնւում է հանգուցեալի կառուցած ս. Կարապետ եկեղեցու գաւթում, կատարուեց հանդիսաւոր հոգեհանգիստ։ Կ. Հ. Բ. Ը.-թեան կողմից ներկայացուցիչ էր եկել պ. Բ. Այվազեանը, որը հոգեհանգստից յետոյ մի քանի խօսքով գրուատեց հանգուցեալի արժանիքները և կատարած բարի գործը։ Պ. Այվազեանի խօսքերը վրաց լեզուով բացատրեց Յարութիւն քահանայ Միրիմանեանը։

Բարեգործական Ընկերութիւնը Տէր-Յովհաննէս Տէր-Գալստեանի անուամբ Ախալքալակում պահում է երկդասեան դպրոց, որի շնորհիւ տարածւում է մայրենի լեզու և գրագիտութիւն վիրախօս հայերի մէջ։ Մեծ աշխատանք և խնամք է գործ դնում տեղիս Միրիմանեան քահանան այդ դպրոցի բարգաւաճման վերայ։

—

ՀԱՄԱՄԼՈՒ, 29 հոկտ.—Ս ա ս ո ւ ն ց ի փ ա խ ս տ ա կ ա ն ն ե ր ը. Երկու ամիս առաջ, Մեծ-Ղարաքիլիսայի «Եղբ. Օգն.» Կոմիտէտի որոշմամբ՝ 66 անձ սասունցի փախստականներ տեղաւորուած են Համամլուի շրջանի Ջաթուռ և Ղաչաղան գիւղերում մէջ։ Անցել է այդքան ժամանակ և տակաւին յիշեալ փախստականները չեն ստացած նպաստ և ոչ էլ իրենց մերկութիւնը ծածկելու համար ցերեկուայ և գիշերուայ հագուստ և անկողին։

Անցեալ օր, մի դպրոցական գործի առթիւ տեղս պատահեց շրջանիս գործակալ՝ չոթուռեցի արժ. Տէր Աւագ քհնյ Շահմուրադեանցը, որը արտասուակալ աչքերով խօսեց տանուտէրին

յիշեալ տարագրեալներու ներկայ տխուր և ողորմելի վիճակի մանրամասնութիւնները. պատմեց՝ թէ ինչպէս ամեն օր ինքն անձամբ տնէ տուն պտտելով, տեղացիներէն ուտելու հաց և հաւաքում եղել՝ նրանց գոնէ չոր հացով ապրեցնելու համար, մինչև նպաստի զրկուիլը։

Ի դէպ է ասել, որ շատ անկանոն է բաշխւում նպաստը այս շրջանի մէջը. յունիսի և յուլիսի ամսանպաստը օգոս.-ին է տըրւած, իսկ օգոստոս, սեպտ. և հոկտ.-ը՝ դեռ չէ տրուած։

Թէ ինչու համար այդքան ուշացւում է, չգիտենք... պատկանեալ մարմինները թող բարի լինեն իրենց ուշադրութեան առարկայ դարձնելու յիշեալ նորեկ Սասունցիներու արդի ողբալի վիճակը գլխաւորապէս, իսկ միւս փախստականներուն՝ մասնաւորապէս, որպէսզի տնաքանդ և բնաւեր եղած ողորմելիները հնարաւորութիւն ունենան յառաջիկայ ձմեռուան համար ապրելու միջոցները հայթհայթելու։

Գաղթական

—

ՂԱՓԱՆ, 21 հոկտ.

Ղափանը թաղւում է սովի ճիրաններում. հացի և անհրաժեշտ կենսամթերքների բացակայութիւնը և անասելի թանգութիւնը ստեղծել են շրջանիս գիւղացութեան համար մի չտեսնուած տագնապալից դրութիւն։ Ցորենը արժէ պուդը՝ 7 ռ., ալիւր չկայ, հասարակ չթի արշինը՝ 60—70 կ., շաքարի ֆունտը 1 ռ. 20—1 ռ. 50 կ.։

Շրջանս զրկուած աշխատող ձեռքերից և կտրուած դրսի աշխարհից՝ մնացել է մենմենակ, գիւղացի ընտանիքն անօգնական ու ձեռները ծալած սպասում է գալոց սև օրին։

Ստեղծուած դրութիւնը հնարաւորութեան չափով բարեփոխելու նպատակով վերջերս գործի անցան շրջանիս երկու հասարակական հիմնարկութիւնները – Կ. Հ. Բ. Ը-թեան Ղափանի ճիւղը և Նորաշէնիկի մանր վարկի ընկ.։ Նախանցեալ կիրակի Կ. Հ. Բ. Ը-թեան Ղափանի ճիւղի վարչութիւնը հրաւիրել էր մի ժողով, ուր ներկայ էին նաև շրջանիս հասարակութեանց ներկայացուցիչները։ Վարչութեան նախագահ պ. Ս. Մելիք Ստեփանեանը յայտնեց, որ ինքը մօտերքս Բագւում եղած ժամանակ, վարչութեան անունից դիմել է այնտեղի Ղափանցի և ուրիշ ունեորներին և բացատրելով շրջանիս գիւղացութեան դառն կացութիւնը, խնդրել է նրանց աջակցութիւնը։ Վերջիններս սիրով յանձն են առել գնել ճիւղի վարչութեան տրամադրութեան ներքոյ հարկաւոր եղած գումարը—առանց տոկոսի—շրջանիս համար ալիւր ներմուծելու։ Ալիւրը գնելու և փոխադրելու գործը կազմակերպելը իր վրայ է վերցնում ճիւղի վարչութիւնը, որի համար հարկաւոր է իրեն վարչութեան, գիւղացիներից պատշաճաւոր լիազօրութիւն։ Ներկայ եղողները ուրախութեամբ համաձայնեցին և խոստացան շուտով կատարել այդ բանը։

Նոյն և նման քայլեր արել է նաև յիշեալ մանր վարկի ընկերութիւնը։ Գործն սկսուած է և այժմ յոյժ ցանկալի է, որ շրջանիս ամեն մի կարող ու ձեռնհաս անձ թողնի իր պախարակելի անտարբերութիւնն և աջակցի գործը շուտափոյթ և յաջողութեամբ գլուխ բերելուն։

Աղ-Դէ։

—

ՏՐԱՊԻԶՈՆ, 30 հոկտ.—Այստեղ արդէն ընտրուած են 5 հոգի տեղիս Հ. Կոմիտէի անդամներ, որոնց ցուցակը ներկայացուած է գեներալ Շվարցին ի հաստատութիւն։ Շուտով տեղի կունենայ նոր Կոմիտէի բացումը։

Տրապիզոնի շրջաններից շարունակաբար գալիս են փախըստականներ մեծ և փոքր խմբերով։ Մի շաբաթ առաջ Իւնիայից եկան 60 փախստական հայ, որոնց մեծամասնութիւնը երիտասարդներ են։ Երկու օր առաջ նախկին Կոմիտէի անդամ պ. Օդաբաշեանի առաջնորդութեամբ Էրզրումից եկան 54 հոգի կին և երեխայ, որոնք Տրապիզոնի շրջակայ գիւղերից են։ Այդ փախըստականները փոխադրուած են չորս ֆուրգոններով, որոնց վարձ տրուած է 1050 ռ.։ Տեղիս բոլոր հայոց տները կամ գրաւուած են զինուորական իշխանութեան կողմից կամ աւերուած, քանդուած և անբնակելի դարձրած և կամ լցուած են յոյն գաղթականներով, այնպէս որ մեծ դժուարութեամբ կարելի եղաւ տուն ճարել և պատսպարել այս գաղթականներին։ Այստեղ տիրում է սաստիկ թանգութիւն և ամեն բան դժուարութեամբ է ճարւում։ Լուցկու մի տուփը 12 կ., պանրի ֆունտը 2 ռ.—2 ռ. 40 կ. են։

---

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

### Կ. Հ. Բ. Ը ԹԵԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԻՑ

Կ. Հ. Բ. Ը-թեան 6 նոյեմբերի նիստում կայացան հետևեալ որոշումները.—

Նոր դպրոցներ.—Ժողովում կարդացուեցին Գորու վիճակի հետևեալ գիւղերի արձանագրութիւնները՝ Ջէգվի, Ջերտ, Կարալէթ, Ղարաղաշ և Տղվիսւ, ուր բացուելու են շնորհիւ Սարգիս քահանայ Շիոյեանցի նախաձեռնութեան ծխական դպրոցներ բարերար պ. Տ. Ն. Աֆրիկեանի հաշուով, բացի վերջին գիւղից, և գտնուելու են Կ. Հ. Բ. Ը-թեան խնամատարութեան տակ։

Խորհուրդը որոշեց ընդունել այդ դպրոցների հոգատարութիւնը իւր վերայ և յայտնել շնորհակալութիւն նուիրատու պ. Տ. Ն. Աֆրիկեանին։

Դպրոցական հսկողութիւն.—Որովհետև Խորհրդի լիազօրները զբաղուած են գաղթականական գործերով, իսկ դպրոցները կարօտ են առանձին հսկողութեան, ուստի յանձնարարել լիազօր պ. Ա. Շարաֆեանին իւր օգնականներով հսկողութիւն ունենալ Ընկ. նպաստով պահուող դպրոցների վերայ։

Նոր ճիւղ.—Կարդացուեց Մեղրի գիւղի հասարակութեան մի խումբ անձանց խնդիրը, որոնք ցանկութիւն են յայտնում բանալու Ընկ. նոր ճիւղ։ Որոշուեց յարգել նոցա խնդիրը և միջնորդութիւն յարուցանել այդ մասին պատշաճաւոր իշխանութեան առաջ, իսկ Մեղրու հասարակութեանը տալ հրահանգներ ճիւղ բանալու մասին և ուղարկել կարևոր մատեաններ և բլանկներ։

Շուլաւէրի ճիւղի նոր վարչութիւնը.—Հաստատել Շուլաւէրի ճիւղի վարչութեան նորընտիր անդամներին պաշտօններում—նախագահ վարչութեան՝ Վահան Միրաքեան, գանձապահ՝ պ. Արամ Մեհրաբեան, քարտուղար՝ Յովհաննէս ք. Վերանեան, անդամներ՝ տիկին Վարդուհի Միրաքեան, տ. Յոյս Զարգարեան և Վաղարշակ Զարգարեան։

Դուշէթի ճիւղի նոր վարչութիւնը.—Հաստատել Դուշէթի ճիւղի վարչութեան նորընտիր անդամներին—նախագահ՝ պ. Վահան Թեւզեանին, գանձապահ՝ պ. Նիկողայոս Բարաթեանին, քարտուղար՝ Ս. ք. Տէր-Մարկոսեանին և անդամներ՝ պ. Գրիգոր Միրաքեանին և Զաքար Դալլաքեանին։ Առաջադրել նորակազմ վարչութեան անմիջապէս գործի սկսել և պահանջել վարչութեան նախկին նախագահ Յ. ք. Ապրելեանից ճիւղի բոլոր գործերը և հաշիւները և զեկուցանել Խորհրդիս. այլ և յայտնել շնորհակալութիւն Ս. ք. Տէր-Մարկոսեանին ճիւղը վերաբանալու առթիւ։

Ախալքալակ գիւղի Ընկ. կալուածքը.—Աչքի առաջ ունենալով գործավար Բ. Այվազեանի զեկուցումը Ախալքալակի հանգ. Յով. ա. ք. Տէր-Գալստեանի նուիրած կալուածների դրութեան և Ս. Կարապետ եկեղեցու օր աւուր քայքայուիլը, յանձնարարել Խորհրդիս անդամներ ճարտարապետ պ. Ս. Լիսիցեանին և Բ. Մամուէլեանին գնալ Ախալքալակ և կարգադրել կարևորը։

⁂

Թէոդոր Խաչատրեանից յօգուտ որբերի ճաշարանի 50 ռ.,

*Դաւիթ Ալէքսեան Ջանջուղազեանից 100 ռուբ., որից 50 ռ. յօգուտ «Համբաւաբերի» և 50 ռ. յօգուտ աշակերտական ճաշարանի։*

***

*Նիժ գիւղի հասարակութեան մի խումբ անձինք դիմելով Կ. Հ. Բ. Ընկ. Խորհրդին խնդրել են թոյլ տալ բանալ Ընկ. նոր ճիւղ։*

***

*Կ. Հ. Բ. Ը-թեան Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է Ինժ. Մ. Գ. Ալիբէգեանից իւր անուան պահուող Գորուայ վիճակի Բախուբէլ գիւղի դպրոցի ներկայ ուսում. տար. նպաստը 1000 ռ.։*

*—Հայուհեաց Բար. Ընկ. վարչութիւնից ճաշավարձ չորս հոգու 24 ռ.։*

*—Ցարսկիէ Կոլոդցի ճիւղի վարչութիւնից աշակերտական ներկայացումից և երեկոյթից ստացուած յօգուտ փախստակ. 70 ռ.։*

*—Խոյթա գիւղի դպր. հոգաբարձութիւնից՝ Գէորգ Մելքոնեանի միջոցով մի հարսանիքում ժողոված յօգուտ որբ երեխաների 11 ռ., յօգուտ հայ գերիների 11 ռ. և փախստականների 10 ռ., ընդամենը 32 ռ.։*

***

*Պ. Տ. Աֆրիկեանը Գորու գաւառում 4 հայկ. դպրոց բանալու համար նուիրել է 1,000 ռուբ.։ Այժմ հաղորդում են, որ պ. Աֆրիկեանը յանձն է առել նաև այդ դպրոցների ուսուցիչների ռոճիկներն ես տալ շարունակաբար, դպրոցների գոյութեան ընթացքում։*

## ՃԻՒՂԵՐ

### ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԷ

*Կարօ-Սասունին Մուշից Կենտր. Կոմիտէին հեռագրում է՝ որ Մոտկանից և Աչից երեք խմբով հարիւր գաղթական է հասել. շարունակում են նորեր գալ. հարկաւոր է սննդատու կայան բաց անել։*

***

*Կարօ-Սասունին կրկին հեռագրում է, որ Խոզանի շրջանից Մուշ են եկել 35 մերկ և սոված գաղթական։ Կոմիտէն կարգադրել է ուղարկել սնունդ և տաք շոր։*

***

*Թիֆլիսի հայ կաթոլիկների աղքատախնամ ընկերութիւնը խնդրել է Կենտ. Կոմիտէին՝ դիւրութիւն տալ Երևանի, Ալէքսանդրապոլի և Կարսի շրջանների գաղթականութեան՝ փոխադրելու իրենց տրամադրութեան ներքև գտնուած տաք շորերը*

***

*Գանձակի Կոմիտէի լիազօրի առաջարկութեան համաձայն՝ Կենտրոնական Կոմիտէն որոշեց բաց անել Գանձակում «Աշխատանքի տուն» գաղթական կանանց և երեխաների համար։*

***

*Որոշուեց Մուշ ուղարկել 50 որբի համար շորեղէն, ուտելեղէն ևայլն, իսկ բժշկական օգնութիւն հասցնելու համար դիմել գեն. Թամամշեանին և Քաղաքների Միութեան խորհրդին։*

***

*Հայկ. Կ. Կոմիտէն գաղթ. նպաստաբաշխ մասնաժողովի միջոցաւ 1916 հոկտ. 30-ից մինչև 1916 նոյեմբ. 5-ը վճարել 78 կոյր, անկեալ և հիւանդ գաղթականների նպաստ 134 ռ. 83 կ. և 21 գաղթականների 63 ռ. 20 կ. ճանապարհի ծախս. ընդամենը 198 ռ. 3 կ.։*

## ՎԵՐՋԻՆ ՀԵՌԱԳՐԵՐ

### ՀԱՅ. ԿԵՆՏՐ. ԿՈՄԻՏԷԻՆ

*Եկատերինոդար—Մելքոնեանից*

*Գնուած է պետութեան որոշած հաստատուն գնով տասնական վագոն ալիւր և ցորեն։ Դանեյեսկուց քսանական վագոն ալիւր և եգիպտացորեն ստանալու համար հարկաւոր է 60 հազար ռուբ.։*

—

*Վան—Օհանջանեանից*

*Խնդրում եմ շուտափոյթ հեռագրեք Իգդիր ֆուրգոններով ուղարկեն 500 պուդ նաւթ, 200 պուդ շաքար. ալիւր հարկաւոր չէ։ Այս հեռագրին պատասխանուած է և կարգադրած կատարել։*

—

*Եկատերինոդար—Մելքոնեանից*

*Գնել եմ 1000 պուդ մակարոն, ուղարկեցէք նարեադ։*

—

*Սարիղամիշ—Գալստեանից*

*Մէկ վագոն ալիւր ուղարկեցի Բօզ գիւղ, մէկ էլ Կարին։ Թաւաքալեանի ուղարկած բեռնատարքը (տրանսպորտը) 19 սայլ հասաւ Սարիղամիշ։ Եզներից մի քանիսը հիւանդ են, հարկաւոր է հանգստութիւն. առայժմ հնար չկայ սայլեր Խնուս և Կարին ուղարկելու։ Բեռնատարքի համար վարձուած է շէնք։*

## ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԲԱԺԱՆՄՈՒՆՔ ՊԵՏԱԿԱՆ ՄԻՋՈՑՆԵՐՈՎ

*Պետական միջոցներով պահուող պարենաւորման բաժանմունքը 1916 թուի մայիսի վերջերից մինչև հիմա պահեստներ է բաց արել հետևեալ վայրերում. Երևանի նահանգ՝ Երևանում, Ալէքսանդրապոլում. Ղարաքիլիսայում, Նոր-Բայազիդում, Վաղարշապատում, Իգդիրում, Ղամարլուում, Ելենովկայում, Ներքին-Ախտայում, Ջուղայում և Ղարանլուղում։ Գանձակի նահանգ՝ Գանձակում, Ղարաչինարում, Անենոյում, Աղստաֆայում, Դիլիջանում, Բարվանսարայում, Կարսի շրջանում, Սարիղամիշում, Բաշ-Գիւղում և ռուսական բանակի Հայաստանի տիրապետած վայրերից Վանում, Տրապիզոնում, Կարինում, Մուշում, Խնուսում, Ալաշկերտում, մօտ օրերս բացուելու է Տիկորում, Աշտարակում և Արդահանում։*

*Նոր գնումներ.—Դեմակոս եղբայրներից գնուած է նորից 20 վ. ալիւր, Լիսիկադոս՝ 40 վ., Հիւսիսային Կովկաս է ուղարկուած տնտեսական բաժնի լիազօր Յ. Գ. Մելքոնեանց մթերքների գնումներ կատարելու համար, որ արդէն 15 վ. ցորեն և 10 վ. ալիւր գնել է, որի համար Ընկ. փոխադրեց 60,000 ռ.։ Գարի փոխադրելու համար գնուած է ընդամենը 12 վագոն։ Նաւթի համար Թիֆլիսի Նաւթային ընկերութիւնը խոստացել է մէկական վագոն ուղարկել մեր պահեստներին։*

*Հոկտեմբերի 25-ից մինչև նոյեմբերի 10-ը ուղարկուած են*

*Ալիւր՝ Վաղարշապատ՝ 5 վագոն, Ալէքսանդրապոլ՝ 6, Ղարաչինար 1, Աղստաֆա 6, Ղարաքիլիսա 3, Իգդիր 4, Անենօ 1, Ղամարլու 2, Սարիղամիշ 1, Երևան 2 և Կարս 1։*

*Գարի՝ ուղարկուած է Իգդիր 1 վագոն։*

*Լուցկի՝ Երևան՝ 125 հազար տուփ, Ղարաքիլիսա՝ 250 հա-*

գար, Իգդիր՝ 200 հազար, Վաղարշապատ՝ 150 հազար, Սարիղամիշ՝ 125 հազար, Ալէքսանդրապոլ՝ 150 հազար։

Պարէնաւորման բաժանմունքը վերջերս կառավարութիւնից ստացաւ 500,000 ռուբլի գաղթականութեան կարիքների համար։

# Քրոնիկոն

Խնդիր է յարուցուած Բագւում հիմնելու մանկավարժական դասընթացքներ (կուրսեր) Թուրք ազգային դպրոցների համար ուսուցիչներ պատրաստելու։

***

Շվէյցարիայի Վեօվէ քաղաքում սրտի պայթումից 76 տարեկան հասակում յանկարծամահ եղաւ լեհացի հռչակաւոր գրող Հենրիկ Սենկևիչը։ Լեհացիները մտադիր են իրենց ազգային մեծ գրողի թաղմանը հանդիսաւոր բնոյթ տալ։ Պատերազմը վերջանալուց յետոյ մարմինը կփոխադրուի Լեհաստան։

***

Պաշտօնական գործերով Թիֆլիսից մեկնել է Կովկասի Փոխարքայ Մեծ Իշխան Նիկոլայ Նիկոլայևիչը։ Փոխարքայի հրամանի համաձայն իր բացակայութեան միջոցին Փոխարքայի պարտականութիւնները կատարելու է գեներալ Ն. Ն. Եանուշկևիչը։

***

Ելևմտից (ֆինանսների) Նախարարութիւնը հաստատել է Անդրկովկասի առևտր արդիւնաբերական բանկի կանոնադրութիւնը։

***

Անդրկովկասեան սպառողական միութիւնը որոշել է հրատարակել սեփական թերթ, որ զբաղուելու է յատկապէս Անդրկովկասեան սպառողական կեանքի խնդիրներով։

***

Երկրագործութեան նախարարը Թիֆլիս քաղաքի և նահանգի պարէնաւորման գործի լիազօր է նշանակել նահանգապետ Մանդրիկային։

***

Հոկտեմբերի ընթացքում Կ. Հ. Բ. Ընկերութեան Կենտրոնական գրադարանից տրուել է կարդալու 3,452 գիրք, որից 2,393 հայերէն և 1,059-ը ռուսերէն։ Նոյն ամսուան ընթացքում ընթերցարան են յաճախել 2,775 հոգի, որից 1,202 տղամարդ և 1,573 կին-մարդ։

***

Հայկ. Կենտր. Կոմիտէի նախագահ պ. Ս. Յարութիւնեանը ամսիս 12-ին պաշտօնական գործերով մեկնեց Պետրոգրադ։

***

Փոխարքայի դիւանատունը կազմել է ընդհանուր Կովկասի համար մի կանոնադրութիւն, որի համաձայն հաստատուելու են պարէնաւորիչ հոգաբարձութիւններ։ Այդ կանոնադրութիւնը մօտ օրերս կհրատարակուի։

***

Վ. Վ. Վոլեանսկին թոյլտուութիւն է խնդրել Նահանգապետից՝ Թիֆլիսում «Кавказская Заря» անունով ամենօրեայ թերթ հրատարակելու համար։

***

Բագուի Հայ Գրողների Ընկերութիւնը որոշել է գաւառներում ճիւղեր բանալ. այդ առթիւ պէտք է կանոնադրութիւնը փոփոխութեան ենթարկուի։

***

Այսօր «Մեղու» աշխատանքի տունը իր բնակարանում բաց է անում մանկական գրադարան-ընթերցարան ի յիշատակ հանգուցեալ Սաթենիկ Օհանջանեանի։

***

Մի ուղղում. «Համբաւաբեր»ի № 45-ում պ. Մ. Մատէնճեանի դասախօսութեան մասին գրուած յօդուածի վերջում վճռաբանողների շարքին չի յիշատակուած բժ. Վ. Արծրունու անունը, այնպէս որ կարող է թիւրիմացութեամբ վերջին նախադասութիւնը, որտեղ ցաւ է յայտնուած Պառնասեան գրականութեան սակաւ տեղեակների վճռաբանութեան մասնակցելու մասին, վիրաւորական լինել յարգելի բժշկին, որ ոչ թէ վճռաբանել՝ այլ գրուատել է դասախօսութիւնը։

# Արտաքին տեսութիւն

## ՍԽԱԼ ՀԱՇԻՒ ԵՒ ԺԱՄԱՆԱԿԱՒՈՐ ՅԱՂԹՈՒԹԻՒՆ

Գերմանիան յայտարարեց Լեհաստանի անկախութիւն և Բավարիայի Լէոպոլդ իշխանին Լեհացոց թագաւոր։ Մայրաքաղաքի և Կովկասի թերթերը բազմաթիւ յօդուածներ են նուիրում այս խնդրին, բայց դեռ ոչ ոք չի խօսել, թէ ինչ հետևանքներ կարող է ունենալ Գերմանիայի այս խաղը։ Կասկած չկայ, որ Գերմանիան այս գործողութեամբ կամենում է աւելացնել իւր ուժերը՝ գրաւելով տասնեակ միլիոնաւոր լեհ ժողովրդի համակրութիւնը, որ կարող է մի քանի հարիւր հազար մարդ հանել պատերազմի դաշտը։ Բայց կարող է արդեօք Գերմանիան հասնել իւր նպատակին։ Բնաւ ոչ։ Մայրաքաղաքի ռուս թերթերը իրաւացի գտնում են, որ ռուս չինովնիկները միշտ ուշանում են լաւ գործեր կատարելու։ Իհարկէ վաղուց պէտք էր Ռուսաստանը յայտարարէր Լեհաստանի ինքնավարութիւնը ոչ իբրև խոստում, այլ իբրև օրէնսդրական գործողութիւն, և այն ժամանակ Գերմանիան զրկուած կլինէր նոյն իսկ ժամանակաւոր դիպլոմատիկ յաղթութիւն տանելու հնարաւորութիւնից։ Լեհացիք իբրև խելօք ազգ (ապացուցեցին այս պատերազմում) չեն կարող Գերմանիայի վարմունքն ընդունել իբրև շնորհ և ոչ էլ մի կայուն և հաստատ գործ։ Նրանք շատ լաւ գիտեն, որ առանց դաշնակիցների համաձայնութեան ոչ մի լեհական թագաւորութիւն գոյութիւն չի կարող ունենալ։ Իսկ դաշնակիցները ոչ մի կերպ չպիտի վաւերացնեն Գերմանիայի խաղը, եթէ լեհացիք իրենց ուժերը գործադրեն դաշնակիցների դէմ։ Այս մի պատճառ է, որ լեհացիք չեն կարող Գերմանիայի սպասած չափով օգնել նրան։

Երկրորդ պատճառը, թէ ինչու համար Գերմանիան ոչինչ չի կարող ձեռք բերել այս խաղով, այն է, որ դաշնակիցները երևի շատ շուտով Ռուսաստանի բերանով կը յայտարարեն, որ լեհական ինքնավարութիւնը նրանք կընդունեն ամբողջ Լեհաստանի համար, այսինքն գերմանական Պոզնանը և Աւստրիական Գալիցիան հետը։ Այսպիսի մի ակտ դաշնակիցների կողմից Գերմանիային կը դնի անելանելի դրութեան, իսկ լեհացիներին հնարաւորութիւն կը տայ դիմադրելու Գերմանիայի ջանքերին՝ մեծ չափերով օգտագործելու լեհական ուժերը։ Գերմանիան հօ չի կարող հաւատացնել լեհական ներկայացուցիչներին, թէ ապագայ վեհաժողովում դաշնակիցները ձայն չպիտի ունենան։ Ուրեմն Վիլհելմ կայսեր և իւր խորհրդատուների խաղը լեհերին կարող է օգտաւէտ լինել, բայց ոչ Գերմանիային, որովհետև Լեհաստանը անպատճառ անկախութիւն կստանայ, բայց աւելի 'ի հաշիւ Գերմանիայի և Աւստրիայի քան թէ Ռուսաստանի։ Եթէ Լեհաստանը որև է ինքնավարութիւն ստանայ առանց Կրակովի՝ լեհացիների աչքը միշտ կըլինի դէպի Կրակով և Պոզնան, և Գերմանիան ոչ թէ բարեկամ ձեռք կը բերի, այլ թշնամի։ Իսկ եթէ Լեհաստանը

վերականգնումի ամբողջութեամբ՝ այն ժամանակ առաւելապէս կըկորցնեն Գերմանիան և Աւստրիան։ Այսպէս թէ այնպէս Լեհաստանը կազատուի, իսկ մենք, թշուառներս, առայժմ պիտի ողբանք մեր նահատակներին ու մրմնջանք.

Սլաւոնի ձեռքէն ջախջախուած շղթան
Քեզ պինդ կապկապեց խղճուկ Հայաստան։

Գ. Ենգիբարեան

Եւ ձեզ ժպտացող բոլոր դէմքերին՝
Կը տեսնէք լոկ մահ և մահուան ցնցում...
Եւ դուք կը դառնաք անցեալի գերին,
Եւ ձեզ չի փրկի ոչ մի մոռացում։

Գ. Բեալաշեան

# Գեղարուեստ

## ՅԻՇԱՏԱԿԸ

Գիւղին նեղլիկ ու քարքարուտ փողոցէն,
Պառաւ մամը ջուրի կ'իջնայ ամեն օր.
Շողերն այգուն գրգանքմ՝ հազիւ կը սփռեն,
Կոտրած կուժը ձեռքին՝ կ'իջնայ յամրօրօր։
Ու վեր կ'ելլէ, դէմքին հեշտին քմծիծաղ.
Ընչակտուր՝ բակի դրան կը հասնի.
Նախ գոհութեամբ կ'ուղղէ նայուածք մը խաղաղ,
Քայլերը զինք տանեն ծառին դեռատի։
Երբ ալ ջուրը՝ ջինջ սարսուռով մը կ'օծէ
Կանաչազարդ սաղարթները թարմագեղ,
Վշտամորմոք՝ մահը մեղմիկ կը հեծծէ...
Ու կը ցօղէ զոյգմ՝ արցունքներ լուսագեղ...
Ու կը ջրէ գուրգուրանքով՝ ամեն օր
Մատղահասակ ընկուզենին այդ դալար,
Զի յիշատակն է այդ տղուն իր զինուոր...
Տարեր են զայն... ու կ'ուշանայ... ու չի գար...

Հ. Արտուր

Երևան

## «ԱՐԵԱՆ ԷՋԵՐ» գրքից

Ես ձեզ ասում եմ կզգաք խենթ ծարաւ
Ջերմ կարեկցութիւն ու ջերմ գորովի.
Զուր կը խուզարկէք սրտներդ անիրաւ,
Սրտներդ՝ անդունդ արիւնի-ծովի։

Եւ չէք մոռանայ դուք այդքան սուկում
Եւ վայրագութիւն, ոճիր անպատում...
Ես ձեզ ասում եմ, որ սիրող գրկում՝
Կզգաք ձեզ, որպէս ծով-անապատում։

Եւ ոճիրը ձեր կը հագնէ մարմին,
Կը քայլէ ձեզ հետ ամեն մի վայրում...
Ես ձեզ ասում եմ,—զգւանքի ժամին
Մատներից կըզգաք արիւնի այրում։

Չէք գտնի խօսքեր աղօթքի համար,
Ի զո՜ւր կտենչաք արցունքի մի կաթ,
Եւ ձեր կրծքերին ծանրութեամբ յամառ՝
Կզգաք լոկ պողպատ, արոյր ու երկաթ։

# Գրականութիւն

## ՓԱՓԱԳ

Հերթապահ սպան եկաւ և կարճ ու կտրուկ յայտնեց Օ-ին մահուան դատավճիռը... Օ-ը լսեց ու մէկէն փղձկաց այնքան յախուռն, որ Ալէքը միամտօրէն զարմացաւ ու մտածեց թէ՝ «վա՜հ, տղամարդն էլ բա էսպէս լաց կըլի՞»... ու խղճահարուած՝ մօտիկ տուեց Օ-ի ծնկներին, որ դողում էին ցունցունց։

—«Է՛, հապա ի՞նչ էիր կարծում»—ասաց սպան հանգիստ, անտարբեր—«լրտեսներին պարգե՞ւ պիտի տանք»։ Ասաց ու դուրս գնաց վրանից։ Իսկ Օ-ը շարունակեց արտասուել...

—«Ну-у-у вотъ, плачетъ!»—կէս ժպտով կէս նախատալից նկատեց Ալէքի պահակ ընկերը, որ Կուրսկի նահանգից էր. «На кой чортъ хнычешь? Ты Богу бы молился!... отъ грѣховъ чтобы очиститься... У васъ Аллахъ естъ, ну и молись вашему Аллаху! Вотъ ежели...»

—«Էտը տատար, զեմլակ, ըռուսկի սլօվ նի զնայտ»—միջամտեց Ալէքը և ապա ինքը դարձաւ Օ-ին հայերէն. «ընտանիքաւո՞ր ես, ա թուրք»։

Օ-ը չպատասխանեց, այլ միայն խորը կախ արաւ գլուխը, որ ծածկի երեսը։

—«Եանի, կնիկ-երեխայ ունե՞ս»—նորէն հարցրեց Ալէքը՝ մեղմ ձայնով, բարեկամաբար՝ ու համբերութեամբ սպասեց, որ Օ-ը պատասխանի... «Հը՞... ունե՞ս, ա՛յ քիշի»։

Օ-ը այս անգամ պատասխանեց գլխի թեթև, հազիւ նշմարելի շարժումով, թէ այո, ունի։ Ալէքը գոհ մնաց, լռեց ու ընկաւ մտքերի մէջ... հայեացքն անցաւ վրանից դուրս, լեռները ելաւ, որոնք ձգւում էին հիւսիսից հարաւ՝ գագաթները ձիւնոտ, կողերը ժայռոտ Լեռնաշղթայի երկարութեամբ Ալէքի հայեացքը սահեց ու իջաւ, յետ դարձաւ կրկին՝ Օ-ի վրայ կանգ առաւ։

—«Ինձ էլ երեխէք ունեմ, մինը տղայ ա, մինը աղջիկ»—մեղմագին ասաց Ալէքը Օ-ին ու մեղմ էլ ժպտաց՝ ինքն իրա համար, ինքն իրա առաջ, և այդպէս ժպտալով՝ գլուխը օրօրեց։ Խաղաղ օր էր, երկնքի մի կողմը բաց, միւսը խիտ ու զանգուր ամպերով ծածկուած. արևը մայր էր մտնում հանգիստ, անշտապ.

*սպիտակ լեռնագագաթներին մշուշ էր նստում կամաց-կամաց։ Օդը ցրտում էր։*

*Ռուս զինուորը նստեց գետնին, վրանի մուտքի մօտ՝ ներսի կողմից՝ և սկսեց ծխել։*

*—«Սլուշի, զեմլակ, դաւայ մախորկ՝ տատար պուսկայ կուրիտ, բէդնի չալաւէկ»—խնդրեց Ալէքը՝ ձեռքը մեկնելով։*

—«Да ну его!...»—*այն էր՝ մերժել ուզեց ռուսը, բայց իսկոյն կակղեց և բարեհամբոյր դանդաղութեամբ ծխախոտ գլանեց Օ-ի համար։* «На, отдай... кури, кардашъ, махорка хорошая, росейская».

*Օ-ը շարժում իսկ չարաւ, երբ Ալէքը ծխախոտը մեկնեց նրան թէ՝ «Քաշի, քաշի, որ շատ չմտածես... մտածելուց օգուտ չունես, բանը բանից անց ա կացել... դու հլա մի քաշի էս մախորկէն՝ հոգիդ կդինջանայ»։ Օ-ը դողաց յանկարծ, սաստկացող ցրտից թերևս, և գլուխը վեր բարձրացնելով, շիտակ Ալէքի աչքերին նայեց՝ այնպէս յամառ, խոր ու շեշտակի, որ Ալէքը կարկամեց և հազիւ ցանկանում էր հարցնել, թէ «Ի՞նչ ես էդպէս վրէս մտիկ տալիս»...*

*—«Շո՛ւտ են սպանելու ինձ»—կանխեց նրան Օ-ը խռովուած, փութկոտ, յուսահատ—«շո՛ւտ կանեն... ինչո՞վ հրացանո՞վ, խշտիկո՞վ... կախե՞ն պիտի»։ Նա սրթսրթաց, նստած տեղում գալարուեց ու յետոյ վեր ցատկելով ոտքի կանգնեց՝ աչքերը մոլար, շրթունքն արիւնքամ, ողջ դէմքը գունատ, սեւս, այլանդակուած՝ սարսափից ու կսկիծից։*

—«Сиди, сиди!»—*բարկացած ու հրամայաբար պոռաց ռուս զինուորը՝ հրացանն անմիջապէս պատրաստ անելով.* «чего встаешь?!»

*—«Նիչեւօ, զեմլյակ, օն նի պաբէժիտ. տի նի բէզպակօյս, օն տակ կրիչիտ—սվօյ ժէնա սպամինաիտ, սվոյ դէտի եստ՝ խարոշի ժէնա, խարոշի դէտի... գօրրիյ չալաւէկ, նիչեւօ, զեմլակ»։*

—«А что мнѣ его жена? Пускай сидитъ себѣ, а то начальство замѣтитъ, мнѣ выговоръ будетъ... А что жена? Жена такъ жена, а теперь ужъ поздно, разстрѣляемъ тебя, кардашъ, да и баста! Значитъ судьба».

*Ռուսը նորից փափկեց ու հետաքրքրութեամբ, ապա կարեկցաբար նայեց Օ-ի կողմը։ Օ-ը նստել էր իրա տեղը ու հիմա ցածր տնքում էր։ Երկիւղը, ցաւն ու դառնութիւնը, որոնցով լցուել էր նրա սիրտը քիչ առաջ, հալուեցին արագ... և դատարկուած, լքուած ու ողորմելի՝ նա կծկուեց, ցրտից աւելի ու աւելի դողահար։*

*—«Բա դու խի՞ շպիոնութիւն ես անում»—սկսեց Ալէքը՝ խրատական-բարեկամական ձևով—«որ քեզ բռնէինք էսպէս։ Օղլուշաղդ մեզ չի՞ հիմա... Դրուստ չեմ ասո՞ւմ որ. խի՞ էիր մեր տեղը գալիս, որ բաներ իմանաս ու էթաս ձերոնցը խաբար տաս։ Համ էլ ձեր թուրքերը լաւ բան չեն անում, որ անաստուած կոտորում էք մեր Հայաստանցոցը։ Խօսքի վրայ ասած, դու խի՞ պիտի մեր դուշմանը ըլնես, ես մենք ձեր դուշմանը։ Բաժանելու ի՞նչ ունենք, այ ախպէր. ես իմ կնգայ ու երեխոց տէրն եմ, դու էլ քու ընտանիքի տէրն ես։ Ձերը՝ Մահմէդն ա ու Ալին, մերը՝ Քրիստոսն ու սուրբ Գէորգը։ Ի՞նչ էք մեզ դուշմանացել... բա դու չէ՞իր ուզի, որ դու էս չախիս քու տանը նստած ըլնէիր՝ կնգանդ հետ, երեխորցդ կշտին։ Էս դուշմանութիւնն ու պատերազմը որ չըլնէին՝ դու էն ա քու տանը քեզ համար արխային նստած կըլնէիր, ես էլ իմ տանը»։*

*Օ-ը թեթևակի ճպպացրեց իրա պստիկ աչքերը և ուզեց ժպտալ. բայց խեղճ էր ժպիտը, անգոյն ու անհիւթ։ Միայն աչքերի մէջ ինչ-որ կայծեր երևացին ու շուտ էլ հանգան։ Ալէքը չտեսաւ ու չհասկացաւ։*

*—«Հիմա բանը բանից անց ա կացել»—շարունակեց նա—«երեխէքդ են անտէր մնալու՝ դու նրանց համար մտածի... բալքեամ ասելու բան կունենաս, որ ընտանիքդ իմանայ։ Թէ որ ես սաղ մնացի... բալքեամ մի օր եա մի տեղ հանդիպում եմ՝ ես ախպէրդ կըլի, եա մի ուրիշ բարեկամդ։ Ասած ա թէ սարը սարին չի գայ, ամմա մարդը մարդին կըգայ։ Էս պատերազմը յաւիտենական չի՞ հօ՝ վերջանալի ա. էսօր չըլի՝ երկու ամսից, երկու տարուց եդը վերջանայ պիտի ախր։ Մենք հօ հազար տարի դուշման չենք մնալու իրար... դու քու ասելիքն ասա, ախպէր, ինչ գործդ ա. դու ասա—ես մի թահրով տեղ կը հասցնեմ։ Ողջ մին ա...»*

*Ալէքը ասել ուզեց, թէ «ողջ մին ա՝ քեզ էս ա սպանելու են», բայց միտքը փոխեց ու խրախուսիչ բարձր ձայնով ասաց. «Տղամարդ կա՛ց, տղամա՛րդ, քեզ դա՛յիմ պահի»։*

*Օ-ը մտածում էր։*

*Արեւն արդէն անցել էր լեռներից անդին. երկինքը մթնում էր աննկատ. ամպերը գորշացան ու տարածուեցին հորիզոնից հորիզոն։*

*Երկար մտածեց Օ-ը... մինչև որ հրահանգ եկաւ՝ մահուան դատավճիռն ի կատար ածելու։ Օ-ին տարան հեռու և հրացանազարկ արին։*

—

*«Մեր զօրքը որ էսպէս առաջ ա էթում՝ վերջը Օ-ենց տեղն էլ կը հասնենք։ Հասնելու բաշտան՝ սաղ ման պիտի գամ՝ տունը քթնեմ. չունքի Օ-ը ինձ շատ ա խնդրուել, կտակ ա արել, որ էրեխորցը մի-մի պաչեմ իրա կողմիցը... Խե՛ղճ մարդ էր, հայիփ. ինչ անենք որ շպիոն էր»։*

*Եւ այն օրից ի վեր, տեղի-անտեղի, Ալէքը հարցուփորձ էր անում ամեն պատահած տաճկին ու քիւրդին, թէ «Օ-ա թանմըրսա՞ն, ա մուսուրման»։ Ամեն անգամ մանրամասն նկարագրում էր Օ-ի դէմքը։ Բայց նրա ջանքերն անցնում էին ապարդիւն—հետք իսկ չէր գտնում Օ-ի ընտանիքից։*

*—«Վնա՛ս չունի»—ինքն իրան մխիթարում էր Ալէքը «մի օր չէ մի օր պատերազմը կպրծնի՝ դուշմանութիւնը կը վերջանայ—էն վախտը կը քթնեմ։ Ի՞նչ չպըտի քթնեմ որ. աշխար ա, մենք էլ՝ մարթ ենք»։*

*Եւ մի օր, կռուի ժամանակ, գնդակը եկաւ՝ սպանեց Ալէքին.... փափագը սրտում։*

*Վ. Վալադեան*

## ՍՏԱՑՈՒԱԾ ԳՐՔԵՐ

*Ստացանք Յովհ. Կոստանեանի «Որոնումներ և Վարանումներ» բանաստեղծութիւնների ժողովածու, գինը՝ 1 ռ. 50 կ.։*

—

*«Բանաստեղծութիւններ» (պրակ առաջին) Գ. Քեալաշեանի. 1916 թուի հրատ. գինը՝ 45 կ.։*

—

*«Թատրոն և Երաժշտութիւն» թատերական, երաժշտական, գեղարուեստական պատկերազարդ հանդէս, № 8, 9, 10. հասցէն՝ Բագու, խմբ. Թատրոն և Երաժշտութիւն ամսագրի։*

—

*«Աղբիւր» և «Տարազ» հանդէսներ, հրատարակութիւն Տ. Նազարեանի, Թիֆլիս։*

## ԳՐԱԿԱՆ ՆՈՐՈՒԹԻՒՆ

### ՀԱՅՈՑ ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆԸ

*Մամուլի տակից դուրս է եկել վաղուց իվեր անձկութեամբ սպասուած* Поэзія Арменіи съ древнѣйшихъ временъ до нашихъ дней, въ переводахъ русскихъ поэтовъ. Редакція, вступительный очеркъ и примѣчанія Валерія Брусова, Изданіе Московскаго Комитета, 1916—*Հայաստանի բանաստեղծութիւնը հնագոյն ժամանակներից մինչև մեր օրերը, ռուս բանաստեղծների թարգմանութեամբ՝ Վալերիոյ Բրուսովի խմբագրութեամբ, ներածական ուրուագծով և նկատողութիւններով։*

*Այս իր տեսակի մէջ* non plus ultra *ժողովածուն ի վաճառ է հանւում երեք ձևի հրատարակութեամբ. 1) Սովորական թղթով։ Շապիկը նկարիչ Մ. Ս. Սարեանի աշխատութիւնն է բազմագոյն խեկատիպ, 3 ռուբլի արժողութիւն. 2) Վերժէ թղթով։ Շապիկը Մ. Ս. Սարեանի աշխատութիւնը, բազմագոյն խեկատիպ, լաւագոյն թղթով. 5 ռուբլի և 3) Սակաւաթիւ շքեղ օրինակներ վերժէ թղթով։ Շապիկը Մ. Ս. Սարեանի աշխատութիւնը՝ բազմագոյն խեկատիպ, լաւագոյն թղթով. ճակատի արտանկարը (*фронтоспись*) նկարիչ Վ. Յ. Սուրէնեանցի աշխատութիւնն է (գունավիմատիպ=*хромолитографія*)։*

*Շքեղ հրատարակութեան (մեծադիր, մօտ 600 երես) օրինակների արժէքը թողնուած է գնորդների բարեհայեցողութեան, որի ինչպէս և երկու միւս հրատարակութեանց արդիւնքը յատկացուած է Մոսկուայի Հայոց Կոմիտէին։ Այս շքեղ հրատարակութիւնից մի քանի օրինակ հետը բերել է Մոսկուայի Կանանց Կոմիտէի քարտուղար տ. Ս. Ջ. Միրզայեանցը, որին ցանկացողները կարող են դիմել.* Ольгинская, 37, кв. С. Канаянца.

—

*Մեր աշխատակից Թամալեանց Ս. կազմել է «Յոբ Երանելու պատմութիւնը» ժողովրդի ընթերցանութեան համար։*

---

# Գիտութիւն

## ՑԵՂԱՅԻՆ ԶԳԱՑՈՒՄ*)

### ԻԲՐԵՒ ՄԻ ԳՈՐԾՕՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՄԷՋ

*Երրորդը՝ Իսրայէլացիներն էին, որոնց մէջ տեսանելի է անքակ ազգային սէր։ Նրանց պատմութեան մէջ կան գծեր, որոնք ցոյց են տալիս ցեղային հակամարտութեան ոգի դէպի իրենց դրացիները։ Յեսուի գիրքը, որ անտարակոյս հեռու է ժամանակակից մի վաւերական գրութիւն լինելուց, նկարագրում է Քանանացոց գրաւած քաղաքների ամբողջ բնակչութեան խողխողումը. Կեղբովայի ճակատագրական դաշտին վրայ, Սաւուղ՝ անթլփատ փղշտացիների ձեռքն չընկնելու համար, խնդրում է իր կապարճակրից սպանել իրան։ Այսու հանդերձ Իսրայէլացիները ոչ միայն տրամադիր էին ամուսնութիւն հաստատել Ամովրացիների, Քիտացիների և Հերուսացիների հետ, այլ և ընդունել նրանց աստուածները. և մինչև Եբրայական Միապետութեան վերջը մարգարէներ իզուր ջանում էին նրանց վերադարձնել միմիայն Եհովայի պաշտամունքին։ Իսրայէլացիք Եդովմացիներին, Մովաբացիներին և բէնի Ամոնացիներին համարում էին արիւնակից, որովհետև ըստ Ծննդոց գրքի Եդովմացիները սերւում են Աբրահամից, իսկ միւս երկու ընտանիքները իր եղբօրորդի Ղովտից. բայց և այնպէս նրանց միջև գոյութիւն ունէր սաստիկ թշնամութիւն։ Նրանց մոքով երբէք չանցաւ իրար օգնելու Ասորական արշաւանքների դէմ։*

*Երբ վարագոյրը բարձրանում է Իտալիայի վրայից, մենք տեսնում ենք, որ այդտեղ էլ գոյութիւն ունէին արիւնով և բարբառով տարբեր ժողովուրդներ և տէրութիւններ։ Բացի Լատին կամ Օսկեան արմատին պատկանողներից, կային նաև յոյն ներգաղթածներ հարաւում. էգրուսկացիներ՝ և վերջն էլ գալլեր հիւսիսում։ Սրանց միջև անդադար մղւում էին պատերազմներ, պատերազմներ՝ որոնք քիչ կապ ունէին ցեղային այլազանութեանց հետ՝ հակառակ ազգագրագէտների հարցասիրութեան։*

*Իր նուաճողական դարաւոր ասպարէզի տեսչութեան ընթացքում Հռովմն էլ, որ ունէր իր խառնարիւն բնակչութիւնը, չազատուեց այդ զգացումներից։ Ոչ մի ժողովուրդ աւելի հպարտ չէր քան հռոմէացիները, և այդ էլ լաւագոյն պատճառներով։ Թէև իրենց զօրութեան լրութեան շրջանին նրանք իրանց նկատում էին ճակատագրից կոչուած կառավարելու աշխարհը, այնուամենայնիւ նրանք քիչ արհամարհանք ցոյց տուին դէպի իրենց գաւառների հպատակներն, և գրեթէ ոչ մի ցեղային հակակրութիւն։ Մի անգամ նուաճուելուց ետք, մենք լսում ենք շատ քիչ ապստամբութիւններ այդ հպատակների՝ դրդուած ազգային զգացմունքի վիրաւորանքից։ Կարթագինէի սեմականների դէմ մղուած երկար և ահաւոր կռիւը ցեղային մի պայքար էր, բայց այդ մի տիրապետութեան պայքար էր՝ և ոչ թէ իտալացու պայքար՝ ընդդէմ փիւնիկեցու։ Հռոմի գրական ոսկեդարին օժտող մեծ բանաստեղծներից միմիայն Լուկրեցիոս ծնուել էր Հռոմում։ Վերգիլիոսը և Կատուլլուս հաւանօրէն ունէին կելտական ծագում, որովհետև մէկը սերւում էր Մանդուայից, իսկ միւսը՝ Վերոնայից։ Ովիդիոսը Միջերկրականի եղերքից՝ Պելեգնիանից էր։ Պրոպերտիոսը Ումբրիացի էր, ազատ քաղաքացի Ովրատիոսը Անպուլիայից. Սենեկան և Լուկան սպանական ընտանիքի էին պատկանում, Ստատիոսը եկաւ Նէապոլից, Յոբնալը Անքուինումից։ Այսու հանդերձ սրանցից և ոչ մէկը որևիցէ կերպով արհամարհուած չեն հռովմէական ծագում չունենալու համար։ Երբ կայսերական սիստեմը ընդգրկեց քաղաքակիրթ աշխարհը, ամեն տեսակ պաշտօնները մինչև իսկ ինքնակալութիւնը բաց էր ամեն տեսակ ծագում ունեցող մարդկանց առաջ։*

*Թւում է, որ միմիայն երկու ցեղ առարկայ էին ատելութեան։ Նախ Եգիպտացի՝ որ նկատւում էին իբրև անգրաւիչ, գոռոզ և կռուասէր ժողովուրդ. Միմֆիսում գործադրուող անասունի պաշտամունքը առթում էր նողկանք՝ չնայած որ Հռոմում էլ կային Իսիսին և Սերապիսին խնկարկողներ։*

*Ապա հրէաները, որոնք ատւում էին ոչ իբրև արևելցիներ այլ բուն իրանց հրէաների համար պատուաբեր պատճառներով, նրանք գործունեայ և ձեռներէց ժողովուրդ էին. նրանք միաբանում էին և օգնում իրար։ Նրանք ապրում էին առանձին և մերժում էին ճանաչել հեթանոսների աստուածները. այդ պատճառաւ էլ նրանք ամբաստանւում էին իբրև մարդկային ցեղի ատողներ։ Սակայն քիչ չէր թիւը կրթուած հռոմէացիների, որոնք բաւարարութիւն չգտնելով պաշտօնական մաշած կրօնքի և նոյնիսկ յունական փիլիսոփայութեան մէջ, հրապուրւում էին դէպի յուդայականութիւնը (*Judaism*), որի մի ձևը երկար ժամանակ սեպւում էր քրիստոնէութիւնը։ Կայսրութեան ընդարձակ սահմաններից դուրս գտնուող ամենամեծ ազգերի հանդէպ անգամ Հռոմում թոյլ էր ցեղային հակամարտութեան գիտակցութիւնը։ Տակիտոսը հիացմունքով խօսում է գերմանների պարզ առաքինութիւնների մասին, որոնք արդէն սպառնում էին կայսրութեան հիւսիսային սահմաններին. Կղովդիանոսի լաւագոյն ոտանաւորները գովաբանում են վանդալ Ստիլիքոյի քաջագործութիւնը։ Սիրիացի յունախօս Պրոկոպիոսի հայրենասիրական հպարտութիւնը արհամարհում է Պարսկաստանի Սասանեան թագաւորների ամբարտաւանութիւնը. սակայն նրա էջերի մէջ շատ քիչ ցուցմունք կայ ապացուցանող*

*) Տես «Համբաւաբեր» № 43։

որ նա այդ ահաւոր թշնամիների հետ ընդհարումը համարում էր միանգամայն և մի ցեղային և մի պետական բաղխում։

Մենք ժամանակակիցներս հսկայական մի ցեղային շարժում ենք համարում դէպի հարաւ և արևմուտք կատարուած այն գաղթականութիւնները՝ որ գերմանացիք անուանում են «Völkerwanderung» և որոնք Արևելեան Գօթացիներին և Լոմբարդներին առաջնորդեցին դէպի Իտալիա, վանդալներին՝ դէպի Աֆրիկա, Արևմտեան գօթացիներին՝ դէպի Սպանիա, ֆրանքներին՝ դէպի Գալլիա և անգլներին՝ դէպի Բրիտանիա։ Դրանք ստուգիւ ցեղային մեծ շարժումներ էին, սակայն այն ժամանակ մարդիկ այդպէս չէին համարում։ Հռոմէական կայսրութեան նահանգային հպատակները տեսնում էին, որ այդ արշաւողներ, իրենց յառաջխաղացութեան ընթացքում հիմնում էին հռոմէական արուեստների վրայ և որդեգրում էին հռոմէական կրօնը։ Ժամանակակից գրողների գործերում կարելի է գտնել շատ քիչ ցուցմունքներ տեւտոն և լատին ժողովուրդների միջև ոևէ բնական հակառակութեան, և դեռ նուազ՝ ցեղային թշնամութեան մասին։

Արշաւողները բացի վայրագ հոներից ցոյց են տուել յարգանք և գրեթէ սարսափ հանդէպ իրենց գտած քաղաքակրթութեան, և նրանք կործանել են շատ քիչ թուով յիշատակարաններ։ Ո՛չ Արևմտեան գօթացի Ալարիկոս, և ոչ էլ Արևելեան գօթացի Թէօդորիկոս ցոյց են տուել այն վրիժառու կիրքը, որ արտայայտել է Բայրըն իր համբաւաւոր տաղով «Ելէք դուք գօթացիներ. և յագեցրէք ձեր զայրոյթը»։

Մենք այժմ հասնում ենք Միջնադարեան խաւար շրջանին, այսպէս ասուած հաւատքի դարերին, որոնք անշուշտ եկեղեցականութեան դարեր էին։ Եւ մենք գտնւում ենք մի նոր աշխարհում, մի աշխարհ՝ ուր խռովութիւնները ծագում են կրօնի և եկեղեցական աշխարհական պետութեան հարցերից, ուր հելլենական և հռոմէական ժամանակներից աւելի նուազ հասկացողութիւն կայ դաշնակցութիւնների կամ թշնամութիւնների ցեղային արիւնակցական և լեզուական տարբերութիւններից ծագելու մասին։—Դրանք անդադրում պայքարի դարեր էին. երբ կռիւ չէր մղւում կողոպուտի կամ աշխարհակալութեան նպատակների համար, այլ ազգեր կռւում էին տարածելու իրենց սեփական կրօնքը և պաշտամունքը։ Մահմէտի մահից անմիջապէս յետոյ, արաբների Սիրիա արշաւելու օրից մինչև 1912-ի Բալկանեան պատերազմը՝ իսլամութեան և քրիստոնէութեան միջև մղուել է մի պայքար, որ ընդհարուել է շատ քիչ անգամներ։ Քրիստոնեաները չէին իմանում և չէին էլ ուզում իմանալ իրենց Արաբ, Մաւրիտանացի կամ Թիւրք թշնամիների մարդկային ընտանիքի որ ճիւղին պատկանելը. բաւական էր որ նրանք Մահմէտին հետևողներ էին։ «Անհաւատ» բառը երկուստեք եղել է դարաւոր թշնամութեան մի անցախօս (parole)։ Իսլամութեան ներսում էլ այն ատեն չկար ցեղային խտրութիւն և այնուհետև եղել է շատ քիչ։

Դիւրին է բացատրել այն իրողութիւնը որ հին աշխարհում սեամորթը չէր արթնացնում ոևէ զզուանք, սկսած Հոմերոսի օրերից, որ Զևսին և ուրիշ Աստուածներին ուղարկում է յարգանք մատուցանել անբիծ Եթովպացիներին. չուտելու պատճառը այն է որ շատ քիչ սեամորթներ հնարաւորութիւն ունէին անցնել դէպի քաղաքակիրթ երկիրներ։ Իսկ Եգիպտոսի, Թիւրքիայի և Պարսկաստանի պէս մահմեդական երկիրներում նեգրերի գոյնը և դիմագծերը զզուելի չեն համարւում. լինել մի հաւատացեալ նշանակում է լինել ամենին հաւասար։ Անկասկած պարսիկներն և արաբներն ատում են թիւրքին, որովհետև երկուքն էլ վախենում են նրա անողոք կամքից, բայց նրանք արհամարհում են թիւրքի իմացականութիւնը։ Այնուամենայնիւ այդ ատելութիւնը արաբների մէջ չի գոյացրել մի համերաշխութիւն ըմբոստանալու թիւրքերի դէմ. իսկ պարսիկների թշնամութիւնը արմատացել է սիւննի—հիայական ծիսական ատելութեան մէջ։ Լրագիրներում անցեալ օր կարդում էինք որ Միջագետքի որոշ արաբ տոհմեր, որոնք գրեթէ միացել էին բրիտանական ուժերին կռւելու թիւրք Սուլթանի դէմ, նրանք լռեցին, երբ իմացան որ վերջինս իբրև խալիֆ հրատարակել է ճիհատ՝ Անհաւատների դէմ։ Դա ցոյց է տալիս որ նրանցում առաջին գործօնը կրօնն է։

Քրիստոնեայ ազգերի միջև էլ գոյութիւն ունէին որոշ ազգային հակակրութիւններ, որոնք արտաքուստ թւում էին լինել ցեղային ընդհարումներ։ Ամբողջ չորս դար տեւտոնեան կայսրերը ջանացին Իտալիայում հաստատել իրենց տիրապետութիւնը. սակայն կայսրները կռւում էին մի իրաւունքի համար, որ բոլոր իտալացիներին ընդունելի էր միմիայն թէօրիայով, իսկ գործնական կեանքում շատ իտալացիներ մերժում էին Գերմանիոյ տիրապետութիւնը։ Իրական վէճը մղւում էր ոչ այնքան գերմանների և լատինների, որքան աշխարհական և հոգևոր իշխանութեան յաւակնութիւնների միջև, որոնց երկուքին էլ հաւասարապէս կողմնակից էին իտալացի իշխաններ և քաղաքներ։ Դանտէն, ամենահայրենասէր իտալացին, ողջունում է գերմանացի կայսր Հայնրիխ Է-ին։ Իտալացիք գերմանացիների հանդէպ չէին տածում ատելութիւն, ինչպէս մենք յիշում ենք մեր երիտասարդութեան օրերին, երբ Աւստրիայի կառավարիչները սարսափի մի ժամանակ տիրում էին Միլանում և Վենետիկում։

Անգլօ-Ֆրանսիական երկարատև պատերազմների ընթացքում էլ երկու կռւող կողմերի միջև չկար ոևէ ազգային ընդհանուր հակակրութիւն։ Եդուարդ Գ. և իր զաւակներ այնչափ ֆրանսացի էին որչափ անգլիացի. և մի ֆրանսիացի Արքեպիսկոպոս էր որ դատապարտեց Ժան դ՚Արքին՝ անկասկած Անգլիական ճընշումի տակ։ «Անգլիացոց և սկովտիացոց խենթացնող հպարտութիւնը» *) ինչ որ Դանտէն ջոկում և մատնանշում է իբրև իր ժամանակի ամենադառն թշնամութիւն, չունէր ոևէ ցեղային բնաւորութիւն, որովհետև երկու ժողովուրդներն էլ խօսում էին միևնոյն լեզուն և ունէին միևնոյն նկարագիր։

Այսպէս ԺԵ. և ԺԶ. դարերում ամենաթունաւոր թշնամութիւնը գոյութիւն ունէր Դանիացիների և Շվէդների միջև, թէև նրանք այնչափ արիւնակից ժողովուրդներ էին, որչափ Եւրոպայում գտնուող ուրիշ ոևէ երկու ժողովուրդներ։

## ՀԱՅ ԹԱՏՐՈՆ

### Դ Ո Ն-Ժ Ո Ւ Ա Ն

Հայ Դրամատիկ Ընկերութեան խումբը նոյեմբերի 7-ին ներկայացրեց Մոլիէրի Դոն-Ժուան թատերերկը, թարգմ. Գ. Իփէքեանի։

Դոն-Ժուանի մէջ պատկերացած է 15-րդ դարու ազնուականութիւնը, իր բազմապիսի արկածախնդրական միտումներով. այդտեղ երևան է գալիս ժամանակի ազնուական դասակարգի աշխարհայեացքը՝ կնոջ, ամուսնութեան, բարոյական առաքինութեան և կրօնական հաւատալիքների շուրջը։ Կինը Դոն-Ժուանի, ինչպէս նաև միջնադարեան արկածախնդիր ազնուականութեան և պալատական պաշտօնեաների համար ներկայանում է, որպէս բոպէական կրքերի և պաշտամունքի առարկայ. նրանց մէջ ասպետական բարոյականութեան ընդհանուր գիծն է գերիշխողը, որքան կարելի է շատ և նոր գեղեցկութիւնների հանդիպել և բաւարարութիւն տալ արկածախնդրական տենչանքներին։ Դոն-Ժուաններ՝ իրենց արկածախնդրութեան դժուարին և մանուածապատ ճանապարհում յաջողելու համար, բնութիւնից վարձատրուած են հազուագիւտ կարողութիւններով, ինչպէս օրինակ, քաջու-

*) Դանտէ. «Երկնային կատակերգութիւն». «Դրախտ» ԺԹ. տաղ, տող 121.

*թեամբ, անվախութեամբ և արտաքին գրաւիչ յատկութիւններով։ Այդ առաւելութիւնների շնորհիւ է, որ նրանք մի տեղ իրենց չափազանց կիրթ և քաղաքավարի ձևերով, միւս տեղ խիզախ և յանդուգն քայլերով և երրորդ տեղ՝ ստորացումներով և խորամանկութեամբ կարողանում են յաջողել իրենց արկածախնդրական ծրագիրների մէջ։*

*Այսպէս ուրեմն Դոն-Ժուանի տիպը մարդկային բնութեան բազմաթիւ գծերի մի բարդ խառնուրդ է և պահանջում է լաւ մշակութիւն և նուրբ արուեստ։ Պ. Փափազեանը, թէև եւրոպական բեմական արուեստը ուսումնասիրած դերասան, կարողացաւ Դոն-Ժուանի բարդ տիպը ներկայացնել իր կլասիքական բարդ կողմերով. Նա մտել էր դերի հոգեբանութեան մէջ և կարողացել դուրս բերել միջնադարու արկածախնդիր ազնուական, իր ամբողջ հասակով՝ միախառնած նուրբ երգիծաբանութեան։ Փափազեանը, որպէս նոր և շնորհալի ոյժ, այդ երեկոյ աւելի ևս ապացուցեց իր յառաջադիմելու ընդունակութիւնը և բեմական արուեստը կատարելագործելու աշխատանք. կային իհարկէ չափազանցութիւններ, որոնք տեղ-տեղ մի քիչ սառն և չոր էին դարձնում արտիստին, այնպիսի յոյզերի դէմ, որոնք աւելի զգայնութիւն և տաքութիւն են պահանջում. այդ երևոյթը մասամբ մեր արևելցիների այն հոգեբանութիւնից է յառաջ գալիս, որ մենք տրամադիր ենք դէպքերը աւելի յուզումով ընդունել, քան արևմտեան մարդը, որ վարժեցրել է իրեն աւելի սառն և աւելի թոյլ զգայականութեան։*

*Դոն-Ժուանի ծառայի՝ Սկանարէլի դերը կատարում էր պ. Աւետեան, որ երկու ուղղութիւն է պարփակում իր մէջ, մէկը լինել, որպէս խորհրդակից և ծաղրող իր տիրոջ, Դոն-Ժուանի յոռի արարքներին, միւսը՝ լինել նրան ստրուկ և կամակատար։ Առաջին հանգամանքում պ. Աւետեանը ներկայացաւ մեզ մի քիչ աւելի ծաղրածու քան խորհրդակից. նա ցոյց տուեց, որ ինքը տաղանդաւոր կոմիկ է և թէև ծերացած, բայց կարող է միշտ կենդանութիւն դնել կոմիկական դերերում։ Երկրորդ հանգամանքում՝ պ. Աւետեանն աւելի յաջող էր, երեւան բերելով ստրուկի և կամակատարի իսկական տիպը, այնպէս որ Դոն-Ժուան, որքան խիստ և ազդող էր նրա վրայ, Սկանարէլը միւս կողմից նոյնքան թոյլ և հաճոյակատար էր, և ահա թէ ինչու ունկնդիրներն աւելի տպաւորուեցին նրա ծաղրածութիւնից և ստրկական շարժումներից, քան բարոյախօսութիւնից և Դոն-Ժուանին՝ մի տեսակ ուղիղ ճանապարհի դարձնող ընկերակցից։*

*Միւս դերակատարներից յիշատակութեան արժանի են՝ պ. պ. Մանուէլեան, Բերոյեան, Միրզայեան և տիկ. Յասմիկ՝ Դոն-Լուիի, Բիէրոյի, Կոմանդօ արձանի և Էլվիէրի դերերում։ Պ. Բերոյեան Շառլոթի հետ ունեցած տեսակցութեան ժամանակ, ցոյց տուեց չափազանց աշխուժութիւն և գեղջկական պարզմիտ և զուարթ զգայնութիւն։ Պ. Միրզայեանը՝ արձանի խորհրդաւորութիւնն երեւան բերաւ։*

*Հասարակութիւնը գոհ հեռացաւ թատերասրահից։*

*Լեման*

---

*Հայոց Դրամատիկ Ընկերութեան խմբի եօթներորդ հերթական ներկայացումը կը կայանայ վաղ՝ երկուշաբթի, Նոյեմբերի 14-ին, Արտիստիկ թատրոնում։ Խաղալու են Լ. Շանթի «Հին Աստուածներ» թատերերկը։ Աբեղայի դերը կը ստանձնէ Վ. Փափազեանը. Վանահօրը՝ Յ. Սեւումեանը. իսկ իշխանուհուն՝ Տիկ. Սիրանոյշը։ Մասնակցում է ամբողջ խումբը։*

*Արդէն սկսել են փորձերը Շանթի նոր թատերերկ «Կայսր»ի Յ. Սեւումեանի ղեկավարութեամբ։ Նոր բեմապատկերներ նկարելու համար հրաւիրուած են նկարիչներ պ. պ. Բաշինջաղեան և Ֆէթվաճեան։*

## ՊՈՍՏ-ԱՐԿՂ

*Դիլիջան.—Գովում ենք Ձեր եռանդն ու աւիւնը, սակայն դեռ շարունակեցէք աւելի հայերէն մանաւանդ տաղաչափութիւնն ուսել։*

—

*Սուրամ.—Պ. Յովհ. Դաւթեանին.—Չենք ստացել Ձեր ակնարկած յօդուածը։*

---

*Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ*

*Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ*

---

## Յայտարարութիւններ

*Քարվանսարայում (Ղազախի գաւառ) բնակուող Սոնա Ամիրաղեանի 16-ամեայ որդին՝ Համազասպ Մուշեղեան Առաքելեանցը 14 ամսից ի վեր է որ կորած է. տեղը իմացողէն խնդրւում է յայտնել անմիջապէս Հ. Բ. Ընկ. Քարվանսարայի ճիւղի վարչութեան։*

3—2

---

*Անգլիերէնի քաջ ծանօթ Ե. Սահակեան մատչելի գներով Անգլիերէն լեզուի դասեր է տալիս. ցանկացողները թող դիմեն* Межевая, 28.

---

*Կ. Հ. Բ. Ը-թեան փախստականների համար հիմնուած*

**կազմատանը, տողագծարանի և ծրարնոցի**

*արհեստանոցում ընդունւում են ամեն տեսակ կազմարարական պատուէրներ։ Պատրաստւում են նաև զանազան մեծութեան ծրարներ, աշակերտական տետրեր և դիւանական գրքեր։ Դիմել Գանովսկայա փող. տ. Մանթաշեանի։*

---

Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

*Հրատարակութեամբ լոյս տեսաւ և վաճառւում է*

**ԱՐԻՍՏԱԿԷՍ ՓԱՐԻՄՈՒՋԵԱՆԻ**

„ԹԷ ԻՆՉՊԷՍ ՊԷՏՔ Է ԳՐԱԴԱՐԱՆ ԸՆԹԵՐՑԱՐԱՆՆԵՐ ՀԻՄՆԵԼ ԵՒ ԿԱՌԱՎԱՐԵԼ"

ԳՐՔՈՅԿԸ

ԳԻՆԸ 10 ԿՈՊ.

*Դիմել Կ. Հ. Բ. Ը-թեան գրադարանին՝* Абасъ-Абадская 7. *կամ թէ «Գիր» գրախանութին,* Вельяминовская улица.

## Մեծ Իշխանուհի Տատեանա Նիկոլայեւնայի Գլխաւոր Կոմիտէի

*նպաստներով հայ փախստական երեխաների համար բացուած և բացուելիք դպրոցների համար հարկաւոր են*

# ՈՒՍՈՒՑԻՉՆԵՐ-ՈՒՍՈՒՑՉՈՒՀԻՆԵՐ

*(Թիւրքահայ և ռուսահայ)*

*Դպրոցների գործը ղեկավարելու համար ընտրուած* **ԴՊՐՈՑԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴԸ** *որոշելով կազմել ուսուցչական ցանկ, առաջարկում է ցանկացողներին պաշտօնավարել վերոյիշեալ դպրոցներում, փութալ յայտնել Խորհրդին մանրամասն տեղեկութիւններ, թէ որտեղից են, քանի՞ տարեկան են, քանի՞ տարի ուսուցչական պաշտօն են վարել, որ դպրոցում են աւարտել իրենց ուսումը։ Պէտք է դիմել այս հասցէով՝ «Հայ Գաղթականական Ուսումնարանների Դպրոցական Խորհրդին»,* Училищному Совѣту школъ для дѣтей бѣженцевъ, Тифлисъ, Абасъ-Абадская, 7.



*ԲԱՑՈՒԱԾ Է ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ*

1917 Թ. **„ԳՈՐԾ"** 1917 Թ.

Գրական, գիտական, հասարակական եւ քաղաքական ամսագիր

*ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ*

| | | |
|---|---|---|
| ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ | Տարեկան | 15 ր. |
| | Կէս տարուանը | 8 ր. |

ԱՌԱՆՁԻՆ ՀԱՄԱՐԸ ԱՐԺԷ 2 ՌՈՒԲԼԻ

*Նիւթեր և բաժանորդագին ուղարկել հետեւեալ հասցէով՝*

**Баку, редакція „ГОРЦЪ", Николаевская, 33.**

*Առաջին համարը լոյս կը տեսնի դեկտեմբերին մօտաւորապէս հետեւեալ բովանդակութեամբ.*

*Զարէլ Եսայեան՝ «Վերջին բաժակը», Յ. Յովհաննիսեան՝ «Ծովափին» (բանաստ.), Յովհ. Թումանեան՝ «Մոծակն ու Մրջիւնը» (բանաստ.), Սոֆոկլէս՝ «Անտիգոնէ» (թարգմ. Տ. Յովհաննիսեանի), Շարլ Բոդլէր՝ «Փոքրիկ արձակ պօէմներ» (թարգմ. Վ. Տէրեանի), Վ. Տէրեան՝ «Երկու սոնէտ» (բանաստ.), Դ. Դէմիրճեան՝ «Հին երգերից» (բանաստ.), Վ. Փափազեան՝ (պատմ.), Ծ. Թորգոմեան՝ «Լաչակս գլխուդ ըլլա թող», Յ. Մանանդեան՝ «Ազգութեան գաղափարը», Դ. Անանուն՝ «Փորձութեան ժամին», Անկախ՝ «Յուշեր իմ անցեալից», Ե. քահ. Գեղամեանց՝ «Պետրոս Շանշեան», Ե. Ֆրանգեան՝ «Է. Մախի փիլիսոփայութիւնը», Յ. Խանդաղեան՝ «Ռափայէլ Պատկանեանը և իր ընթերցողները»։ Կը լինեն նաև յօդուածներ՝ Լէօյի, Ն. Աղբալեանի, Լ. Աթաբէկեանի, Ա. Չիլինգարեանի, Բ. Իշխանեանի, Յ. Լազարեանի, Ա. Մայիլեանի և այլոց։*

*Խմբագիր՝ Կ. ԿՐԱՍԻԼՆԻԿԵԱՆ*

*Հրատարակիչ՝ Ս. ՏԷՐ-ՂԱԶԱՐԵԱՆ*

*3—2*



**Продолжается подписка на**

Первый и единственный по типу ежемѣсячный иллюстрированный журналъ

# „АРМЯНЕ и ВОЙНА"

Посвященный вопросамъ армянской жизни въ связи съ войной.

ЦѢЛЬ ЖУРНАЛА: широкое освѣдомленіе общества съ армянской дѣйствительностью.

Въ журналѣ принимаютъ участіе извѣстные русскіе и армянскіе литераторы и журналисты.

ПОДПИСНАЯ ЦѢНА:

| | | | |
|---|---|---|---|
| За годъ | 3 р. — к. | За 3 мѣсяца | 75 к. |
| » 1/2 годъ | 1 р. 50 к. | Отдѣльный номеръ | 25 к. |

Подписную плату можно присылать марками.

Пробный номеръ высылается за 3 десятикопѣечныя марки.

Адресъ конторы и редакціи: Одесса, Польская ул. № 16.



**Продолжается подписка на 1916 годъ**

на еженедѣльный общественно-политическій и литературный журналъ посвященный вопросамъ армянской жизни.

# „Армянскій Вѣстникъ"

(первый годъ)

издаваемый въ Москвѣ Ив. Т. Амировымъ при участіи видныхъ русскихъ и армянскихъ литераторовъ и общественныхъ дѣятелей.

Подписная цѣна

Въ Россіи: на 1 годъ 6 руб., на 6 мѣс. 4 руб. на 3 мѣс. 2 руб. 50 коп., на 1 мѣс. 1 р. 25 коп. За границу вдовое. Цѣна отдѣльнаго номера 20 коп.

Журналъ будетъ выходить по воскресеньямъ. Адресъ редакціи и конторы журнала „Армянскій Вѣстникъ": Москва, Остоженка, 2-й Ильинскій пер., д. 3. кв. 2.

Редакторъ издатель

**Иванъ Томасовичъ Амировъ**


*Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Պօղոսեանի* Типографія „Прогрессъ", Лорисъ-Меликовск. 1. Дозволено военной ценз.

ՅԱՒԵԼՈՒԱԾ № 46

# „ՀԱՄԲԱՒԱԲԵՐ"-ի

## ԱՆՈՒԱՆԱՑՈՒՑԱԿ ՓԱԽՍՏԱԿԱՆ ՈՐԲ ԵՐԵԽԱՆԵՐԻ

**Կենտրոնական Կոմիտէի Ալէքսանդրապոլի II որբանոցի որբերի անուանացուցակը**

*1916 թ. սեպտեմբերի 1-ին*

| №№ | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Ծննդավայրը | Գրագէտ | Տարիքը | Ծնող ունի՞ | Ծնողները ո՞րտեղ են | ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ |
|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Ներսէսեան Բագրատ | Արդոս գիւղ | այո | 14 | ոչ | | |
| 2 | Յարութիւնեան Յովհաննէս | Քղի | այո | 10 | ոչ | | |
| 3 | Բարսեղեան Սահակ | Ալւառինջ գիւղ | այո | 14 | — | | |
| 4 | Գրիգորեան Սուրէն | Քղի | այո | 12 | հայր | | |
| 5 | Ափեթեան Սեդրաք | Ալւառինջ գիւղ | ոչ | 14 | — | | |
| 6 | Յովսէփեան Անդրանիկ | Խասս գիւղ | ոչ | 8 | — | | |
| 7 | Մկրտչեան Հրանտ | Արոս գիւղ | — | 9 | — | | |
| 8 | Առաքելեան Անդրանիկ | Ելբիս | — | 9 | — | | |
| 9 | Առաքելեան Թիֆօ | — | — | 8 | — | | |
| 10 | Յովհաննիսեան Ալէքսան | Յաղուտ | — | 8 | — | | |
| 11 | Յակոբեան Սեդրաք | Սարէ գօլէտ | — | 9 | մայր | | |
| 12 | Գասպարեան Յարութիւն | Յաղուտ | — | 13 | — | | |
| 13 | Մկրտչեան Մուքայէլ | Տոլորիկ | — | 12 | — | | |
| 14 | Վարդանեան Յակոբ | Քղի | այո | 10 | մայր | | |
| 15 | Կարապետեան Յակոբ | Խոբիր գիւղ | — | 9 | մայր | | |
| 16 | Ալէքսանեան Տիգրան | Աճարան | — | 10 | — | | |
| 17 | Յակոբեան Աւետիս | Արտան գիւղ | այո | 10 | — | | |
| 18 | Խաչատուրեան Մարտիրոս | Քղի | ոչ | 12 | — | | |
| 19 | Սիմօնեան Մուքայէլ | Խասգիւղ | — | 15 | — | | |
| 20 | Բատոյեան Արամ | Խնուս | — | 10 | — | | |
| 21 | Մնացականեան Գեղամ | Խնուս | — | 9 | — | | |
| 22 | Յովհաննիսեան | Յունան գ. | — | 12 | — | | |
| 23 | Յովհաննիսեան Հրանտ | Բգլից գ. | — | 14 | — | | |
| 24 | Մինասեան Մկրտիչ | Բգլից | — | 14 | — | | |
| 25 | Ղուրշունեան Վարդգէս | Ղարաքոփրի | — | 5 | հայր | | |
| 26 | Քարամեան Գեղամ | Բերդագոմ | — | 4 | — | | |
| 27 | Խաչատրեան Սամուէլ | Քղի | — | 4 | — | | |
| 28 | Մուշեղեան Ազնիւ | Արտոս գիւղ | — | 4 | — | | |
| 29 | Վարդանեան Բերսօ | Քղի | — | 7 | մայր | | |
| 30 | Յովհաննէսեան Սաթենիկ | Բաղէ գիւղ | — | 10 | հայր | | |
| 31 | Ստեփանեան Գիզնիգար | Խորաշէն | — | 1 | — | | |
| 32 | Յակոբեան Մարիամ | Սարէգօլէ | — | 10 | հայր | | |
| 33 | Խաչատրեան Զենօ | Խոտագաւառ | — | 5 | — | | |
| 34 | Զագարեան Վարսօ | Գուտեմիր | — | 5 | — | | |
| 35 | Յարութիւնեան Սօսէ | Խասգիւղ | — | 5 | — | | |
| 36 | Հարութեան Ալմաստ | Խորաշէն | — | 4 | հայր | | |
| 37 | Ղազարեան Մարգարիտ | Թոր գիւղ | — | 5 | — | | |
| 38 | Կարապետեան Վիկտոր | Խնուս | — | 6 | մայր | | |
| 39 | Տօնոյեան Մաքէ | Խոր | — | 5 | հայր | | |
| 40 | Յակոբեան Դարդօ | Քղի | — | 12 | — | | |
| 41 | Յովսէփեան Մարիամ | Սող գիւղ | — | 14 | — | | |
| 42 | Նշանեան Խանում | Քղի | — | 5 | հայր | | |
| 43 | Մխիթարեան Խանէ | Սող գիւղ | — | 10 | — | | |
| 44 | Հարութեան Դիլբար | Խորաշէն | — | 12 | հայր | | |
| 45 | Յովհաննէսեան Ազնիւ | Բաղա | — | 13 | հայր | | |
| 46 | Դանիէլեան Մարիամ | Աղիկ | — | 14 | — | | |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 47 | Շահինեան Մարիամ | Յոր գիւղ | — | 14 | — | |
| 48 | Մօսոյեան Խանում | Բղի | — | 19 | — | |
| 49 | Իզանեան Արմանուշ | Բղի | — | 17 | մայր | Ալէք-պոլ |
| 50 | Պօղոսեան Գիւզալ | Արտոնիջ գ. | — | 16 | — | |
| 51 | Մխիթարեան Խոմար | Խարբերդ | — | 5 | — | |
| 52 | Աստուածուրեան Սօսէ | Երախշահր | — | 12 | — | |
| 53 | Գրիգորեան Սաթենիկ | Խութ | — | 3 | — | |
| 54 | Թորգոմեան Սահակ | Ղարաչօրան | — | 9 | — | |
| 55 | Քերոբեան Մակար | Չրինջաբաղ գ. | — | 10 | — | |
| 56 | Կարապետեան Մեսրոպ | Վարդէչ | — | 12 | — | |
| 57 | Գասպարեան Վարդան | Արդոս գ. | — | 7 | — | |
| 58 | Մկրտչեան Սամուէլ | Քրդավամ | — | 12 | — | |
| 59 | Բաղդասարեան Գրիգոր | Քրդավամ | — | 9 | — | |
| 60 | Սարգսեան Պօղոս | Մարմոս գ. | — | 12 | — | |
| 61 | Զաքարեան Վահան | Բլանուխ | — | 12 | — | |

Կենտրոնական Կոմիտէի Ալէքսանդրապոլի III որբանոցի որբերի անուանացուցակը

(Կանանց ընկ.) սեպտեմբերի 1-ին 1916 թ.

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 1 | Վարսենիկ Պետրոսեան | Կղտաշ | 12 | մայր | Դիլիջան | ոչ |
| 2 | Վարուխ Յակոբեան | Բիթլիս | 11 | եղբ. | Յայտնի չէ | » |
| 3 | Նոյեմզար Ղազարեան | Ծիծան | 7 | այո | Վան | » |
| 4 | Յովսաննա Արշակեան | Ալիւր | 10 | ոչ | » | » |
| 5 | Հայկանուշ Յովհաննիսեան | Ոստան | 12 | մայր | Բիթլիս | այո |
| 6 | Սաթենիկ Մանուկեան | Զարեան | 10 | մայր | Վան | ոչ |
| 7 | Սիրանոյշ Ղազարեան | Գերան | 8 | այո | » | » |
| 8 | Թագուհի Պետրոսեան | Դողաս | 11 | մայր | Բայազէդ | » |
| 9 | Նազիկ Պետրոսեան | Մոկս | 8 | հայր | Վան | » |
| 10 | Մարգարիտ Մուրատեան | Գերանց | 11 | այո | . | « |
| 11 | Ռեհան Յակոբեան | " | 10 | ոչ | " | « |
| 12 | Մարիամ Յակոբեան | Բիթլիս | 7 | այո | " | « |
| 13 | Սիրանոյշ Պետրոսեան | Դաշտա | 10 | ոչ | " | « |
| 14 | Սրբուհի Աւետիսեան | Սուսկա | 11 | մայր | » | " |
| 15 | Ռեհան Յարութիւնեան | Ծկումենց | 11 | մայր | Բայազէդ | " |
| 16 | Թանգիկ Գրիգորեան | Հաւար | 10 | հայր | Վան | « |
| 17 | Հեղինէ Կարապետեան | Մոկս | 10 | մայր | Յայտնի չէ | » |
| 18 | Սիրանոյշ Մանուկեան | Զօյրեւան | 11 | ոչ | Վան | այո |
| 19 | Հայկանոյշ Օհանեան | Կեարից | 10 | » | » | ոչ |
| 20 | Աղնիւ Երանոսեան | Բիթլիս | 13 | մայր | » | այո |
| 21 | Ալմաստ Ղազարեան | Զիկոնց | 11 | ոչ | Երևան | ոչ |
| 22 | Լուսնթագ Սարգսեան | Ծղամեծ | 12 | « | » | " |
| 23 | Ռեհան Մուրադեան | Զալակ | 12 | " | » | » |
| 24 | Նուշօ Սարգսեան | « | 12 | « | » | " |
| 25 | Հեղինէ Վարդանեան | Ալիւր | 12 | « | " | » |
| 26 | Սրբուհի Արմենակեան | Զարվան | 10 | « | " | » |
| 27 | Նուշանիկ Թադէոսեան | Բիթլիս | 12 | մայր | » | » |
| 28 | Արուսեակ Մամբրէեան | Խօրգի | 7 | այո | Յայտնի չէ | » |
| 29 | Աղնիւ Սերոբեան | Բերկրի | 9 | ոչ | Վան | " |
| 30 | Հայկանուշ Մուրադեան | Բերկրի | 12 | « | » | » |
| 31 | Փայծառ Միրիջանեան | Շարեան | 9 | մայր | Յայտնի չէ | » |
| 32 | Սօսի Գրիգորեան | Թիմար | 10 | հայր | Երևան | » |
| 33 | Շուշանիկ Բարսեղեան | Նորավանց | 12 | մայր | Բայազէդ | » |

Որբերն եկել են Վանայ որբանոցից օգոստոսի 10-ին 1916 թ.

## Կենտրոնական Կոմիտէի Ալէքսանդրապոլի IV որբանոցի որբերի անուանացուցակը

1916 թ. սեպտեմբերի 1-ին

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 1 | Սենամ Ազիկեան | Խաչլու | 14 | ոչ | — | ոչ |
| 2 | Վահան Ապոյեան | Թիրէմերան | 8 | մայր | Բաշ գիւղ | « |
| 3 | Մարտիրոս Աւետիսեան | Արմլի | 8 | մայր | Որբանոց | ծառ. |
| 4 | Աղնիւ » | » | 4 | » | » | » |
| 5 | Սաթենիկ Բերբերեան | Կոփ | 11 | ոչ | — | » |
| 6 | Հայկանուշ » | » | 9 | » | — | » |
| 7 | Սենամ Բարսեղեան | Բաշգիւղ | 12 | » | — | » |
| 8 | Գալուստ » | Աւջարա | 5 | մայր | Բաշ գիւղ | |
| 9 | Սարգիս Բոչարեան | Բաշգիւղ | 7 | » | » | |
| 10 | Քիշմիշ Բոտոեան | Խզլերան | 12 | ոչ | — | ոչ |
| 11 | Մնացական » | » | 7 | » | — | » |
| 12 | Աղնիւ Կոպալեան | Խաչլու | 8 | » | — | » |
| 13 | Եսթեր » | » | 3 | » | — | » |
| 14 | Խաչատուր Փինաչեան | Բօնրաս | 7 | » | — | » |
| 15 | Համբարձում Պլէեան | Բաշգիւղ | 8 | » | — | » |
| 16 | Սամսոն » | » | 7 | » | — | » |
| 17 | Սենեքերիմ Կորոյեան | Ձևոկան | 11 | » | — | » |
| 18 | Զարուհի Տէր-Յովհաննիսեան | Նախիջևան | 11 | » | — | » |
| 19 | Նուարդ « | » | 6 | » | — | » |
| 20 | Ներսէս Յովակիմեան | Կարին | 9 | մայր | | |
| 21 | Գեղամ Սամուէլեան | Մուշ | 4 | ոչ | — | ոչ |
| 22 | Ռընդօ Մանուկեան | Իշխան-Զոր | 7 | » | — | » |
| 23 | Աղնիւ Տօնեան | Շէնիկ | 5 | եղբ. | | |
| 24 | Զանի Գիրոյեան | Հօսնար | 7 | մայր | Երկիր | » |
| 25 | Ղարիբ Գրէեան | Հացիկ | 11 | ոչ | — | ոչ |
| 26 | Պէտօ Շմաւոնեան | Մահնիկ | 11 | » | — | » |
| 27 | Մարթա Մկրտչեան | Թէրջան | 6 | հայր | Խնուս | » |
| 28 | Անդրանիկ Վարդանեան | Շէնիկ | 9 | մայր | Անյայտ է | » |
| 29 | Արմենակ Յովհաննիսեան | Ծղակ | 6 | ոչ | — | » |
| 30 | Արշակ Պետրոսեան | Աղրի | 12 | ոչ | — | ոչ |
| 31 | Գըէ Երանոսեան | Խնուս | 7 | » | — | » |
| 32 | Լևոն Գաբրիէլեան | Երիցանկ | 12 | » | — | « |
| 33 | Խմօ Գասպարեան | Կաչա | 12 | » | — | » |
| 34 | Խորէն Խաչատրեան | Հասանով | 18 | » | — | այո |
| 35 | Աղնիւ Խորէնեան | « | 3 | հայր | — | ոչ |
| 36 | Երանոս Գաբրէլեան | Սոլուխ | 7 | ոչ | — | « |
| 37 | Քրիստափոր Զաքարեան | Էնգիքոյ | 5 | « | = | » |
| 38 | Համբարձում Ղուկասեան | Փասէն | 8 | « | — | ոչ |
| 39 | Ռուբէն Պետրոսեան | Աւրան | 8 | « | — | » |
| 40 | Սեդրաք Շէրոյեան | Ջնդուս | 11 | " | — | " |
| 41 | Զարէլ Կիրակոսեան | Խնուս | 4 | « | — | « |
| 42 | Փաղախօ Երանոսեան | Գէրմա | 8 | " | — | » |
| 43 | Սեդրաք Ստեփանեան | Աղրի | 12 | « | — | « |
| 44 | Պետրոս Սարգսեան | Հարդք | 12 | " | — | այո |
| 45 | Մարգար Սարգսեան | Արթօղ | 10 | « | — | » |
| 46 | Տիգրան Յովհաննիսեան | Այգէրուն | 10 | հայր | Երկիր | " |
| 47 | Սարէ Մկրտչեան | Հարդորք | 4 | մայր | » | ոչ |
| 48 | Յարութիւն Կարապետեան | Հասանով | 15 | ոչ | — | այո |
| 49 | Սիրանոյշ Յակոբեան | Աղջամելիք | 10 | » | — | ոչ |
| 50 | Ազգանուշ Հաջոյեան | Մաչրա | 9 | հայր | — | » |
| 51 | Մարտիրոս Ասրէեան | Շէնիկ | 8 | մայր | Մուշ - | " |
| 52 | Թադէոս Խաչօղլեան | Սարդք | 9 | » | " | այո |
| 53 | Կարապետ Զքոյեան | Հակմանց | 7 | ոչ | » | ոչ |
| 54 | Պօղոս Յարութիւնեան | Ապլանք | 6 | հայր | » | » |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 55 | Խաթուն Ղաչլարեան | Հաւարօրք | 4 | ոչ | — | " |
| 56 | Զմրուխտ Գէորգեան | Մուշ | 9 | մայր | Ալէք-պոլ | » |
| 57 | Փայլակ Յակոբեան | Գրօնք | 9 | քոյր | Իգդիր | » |
| 58 | Յարութիւն Գրիգորեան | Կորեր | 13 | ոչ | — | » |
| 59 | Աբետ Պետրոսեան | Փարխ | 11 | մայր | — | այո |
| 60 | Ռբետ Պետրոսեան | Շէյլխան | 16 | ոչ | ոչ | ոչ |
| 61 | Սողոմոն Տօնեան | Շէնիկ | 13 | « | — | » |
| 62 | Գաբրիէլ Պետրոսեան | » | 14 | » | — | այո |
| 63 | Խաչատուր Հայրապետեան | " | 12 | » | — | ոչ |
| 64 | Մկրտիչ Մկրտչեան | « | 13 | » | — | » |
| 65 | Տիգրան Պետրոսեան | Փէյթար | 13 | " | — | " |
| 66 | Արշակ Պօղոսեան | » | 11 | հայր | — | " |
| 67 | Գրիգոր Մարգարեան | " | 10 | մայր | — | " |
| 68 | Խաչատուր Գրիգորեան | » | 10 | " | — | » |
| 69 | Պետրոս Մարկոսեան | Գերմաւ | 10 | եղբ. | — | այո |
| 70 | Միհրան Ադամեան | » | 12 | հայր | — | » |
| 71 | Պետրոս Թովմասեան | " | 6 | հօրեղ | — | ոչ |
| 72 | Թադէոս Աւետիսեան | Թիրջան | 8 | մայր | — | » |
| 73 | Մովսէս Մարգարեան | Մողնուտ-չէն | 11 | ոչ | — | " |
| 74 | Գէորգ Պետրոսեան | Արոս | 12 | » | — | « |
| 75 | Սերովբ Գէորգեան | Ցրօնգ | 13 | » | — | » |
| 76 | Յակոբ Թադէոսեան | » | 9 | այո | — | " |
| 77 | Կարապետ Կարապետեան | Վարդէնիս | 13 | ոչ | — | այո |
| 78 | Այշար Սմբատեան | Խնուսաբերդ | 6 | » | — | ոչ |
| 79 | Սիրան Սմբատեան | » | 7 | » | — | " |
| 80 | Մարգարիտ Մարկոսեան | Ղարաչոբան | 10 | " | — | " |
| 81 | Մարիամ Մարկոսեան | Խնուսաբերդ | 9 | " | — | » |
| 82 | Աղնիւ Գէորգեան | » | 8 | » | — | » |
| 83 | Մարիամ Կատիկեան | Վարդէնիս | 11 | » | — | " |
| 84 | Սանդուխտ Դոմոյեան | " | 4 | » | — | » |
| 85 | Եղիսաբեթ Մխոյեան | Բրդոնք | 4 | " | — | " |
| 86 | Հայկանուշ Մխոյեան | Ղչմաշ | 4 | հայր | — | " |
| 87 | Յակոբ Հայրոյեան | Շմլակ | 5 | ոչ | — | « |
| 88 | Հոռոմ Սարգսեան | Խարդոս | 7 | ոչ | — | » |
| 89 | Մանուէլ Կիւրեղեան | Թէրջանմանց | 13 | » | — | այո |
| 90 | Արմենակ Մուխսեան | Պաղվերան | 14 | " | — | ոչ |
| 91 | Արշակ Աւետիսեան | Կէխուրս | 15 | « | — | » |
| 92 | Նունիկ — | Մուշ | 3 | » | — | » |
| 93 | Գեղանուշ Մանուէլեան | Բաբերդ | 4 | » | — | » |

Կենտրոնական Կոմիտէի Ալէքսանդրապոլի V որբանոցի որբերի անուանացուցակը

սեպտեմբերի 1-ին 1916 թ.

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1 | Արշակ Կիրակոսեան | 10 | [illegible] | ոչ | ոչ |
| 2 | Մեսրոպ Սարգսեան | 10 | | " | այո |
| 3 | Վահան Պետրոսեան | 9 | | » | ոչ |
| 4 | Յակոբ Մկրտչեան | 10 | | » | " |
| 5 | Համբարձում Թորոսեան | 7 | | " | » |
| 6 | Դաւիթ Պետրոսեան | 9 | | հայր | » |
| 7 | Ղազար Մարտիրոսեան | 8 | | հայր | » |
| 8 | Խոսրով Մարտիրոսեան | 9 | | հայր | » |
| 9 | Ազատ Ստեփանեան | 6 | | ոչ | » |
| 10 | Թորգոմ Տօնոյեան | 8 | | » | » |
| 11 | Իսրայէլ Գասպարեան | 6 | | " | » |
| 12 | Կորիւն Վարդանեան | 7 | | » | » |
| 13 | Խաչիկ Կիրակոսեան | 6 | | մայր | » |
| 14 | Հայրիկ Յարութիւնեան | 5 | | ոչ | » |
| 15 | Եղիշէ Սարէեան | 7 | | » | " |
| 16 | Սարգիս Աբրահամեան | 8 | | » | » |